

# ՄԵՐ ՃԱՄԲԱՐԸ

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

Ի՞նչն է, որ գիլ ողողանքով
Մեզ երազներ ու թև կտա.
Բարձունքներից բարձունք կանչող
Մեր ճամբարի շեփորն է դա:
Երբ լեռներում օրն է հատնում,
Քաղցր ու անուշ հոգնությամբ լի,
Ի՞նչն է մեզ իր շուրջն հավաքում.
Դրոշակը մեր ճամբարի:
Երբ որ մութն է փռվում անվերջ
Մինչև աստղեր ու լուսնկա,
Ի՞նչն է խաղում երկնքի մեջ.
Մեր ճամբարի խարույկն է դա:
Եվ երբ գիշերն է խտանում,
Վրաններում, լռության մեջ
Տաք երազներ են կայծկլտում.
Դա խո՜ր քնած ճամբարն է մեր:

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԲԱՏՅԱՆԻ



# ԼԵՌՆԱՅԻՆ ԱՐՇԱՎ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Թեք լանջերով լեռնային,
Բռնած շաղոտ մի շավիղ,
Թմբուկով ու շեփորով
Մենք գնացինք արշավի:

Ջրի մամռոտ պռնկին
Եղնիկ տեսանք քարացած,
Ջրվեժ տեսանք լեռնային
Եվ ճրծիվներ թևաբաց:

Ցերեկն անցավ, ու մթնեց
Հորիզոնի լուրթ հեռուն,
Վար նայեցինք ու տեսանք
Մայրամուտը դաշտերում:

Կարմիր խարույկ վառեցինք
Ամպոտ սարի կատարին
Ու բարձունքից նայեցինք
Մեր հեռավոր ճամբարին:

Վրանները տեսանք մեր
Լույսերի մեջ վառվռուն,
Թվաց, թե մենք չենք եղել
Հեքիաթային այդ հեռվում:

Թվաց՝ այնտեղ ներքևում
Գաղտնիքներ կան անհամար,
Որ կանչում են, կախարդում
Երկնքի պես աստղավառ:

Ողջո՜ւյն, երկի՛ր սիրելի,
Քեզ՝ ամպերի վերևից,
Դու ուրիշ ես երևում
Մայրամուտի լեռներից:



# Մեր նվերը

ԱՂԱՎՆԻ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Հարևանիս աղջկա՝ Նունիկի յոթ տարին լրանում էր սեպտեմբերի մեկին: Այդ օրն էլ նա դպրոց էր գնալու: Երկու շատ նշանավոր տոն Նունիկի կյանքում: Ուրեմն հարկավոր էր որևէ նվեր տալ աղջկան:

Գնացի շրջեցի մեր քաղաքի գրեթե բոլոր խանութները, բայց չգտա մի այնպիսի բան, որ թե՛ գեղեցիկ լիներ, թե՛ հարմար: Հոգնած ու մի քիչ էլ բարկացած կանգնել մայթին մտածում էի, թե էլ ուր կարելի է գնալ, մեկ էլ թռչնի կանչ լսեցի: Հետաքրքրված շուրջս նայեցի, տեսնեմ՝ կանգնած եմ կենդանաբանական խանութի դռանը:

Ներս մտա: Խանութը բավականին ընդարձակ մի սրահ էր, կահավորված այնպես, որ անտառի թավուտ էր հիշեցնում: Ծառաբներին ու ճյուղերին հարմարեցված վանդակներում քիչ թռչուններ կային, որ լուռ ու մունջ ծվարել էին իրենց անկյուններում: Միայն բավականին մեծ մի վանդակում մի քանի զույգ թութակներ էին թռչկոտում: Լորի ցեղի թութակներ էին դրանք, մոտավորապես սարյակի չափ, վառ գույնզգույն փետուրներով ու երկար պոչերով: Ոչ այնքան էլ դուրեկան ձայնով նրանք ճղավում, բղավում էին ու իրար կտցահարում:

— Դրանք կարող են իրար ծվատել,— անհանգըստացա ես:

— Ոչինչ,— ասաց թռչնավաճառը,— նրանք բոլորը մի ընտանիքից են՝ հայրը, մայրը և այս տարի ծնված ձագերը: Կերել կշտացել են և հիմա խաղում են: Այդպես կքաշքշվեն, կաղմկեն, բայց հենց որ բանը հասնի տուրուդմբոցի, ծնողները կմիջամտեն ու կհաշտեցնեն:

Փոքրիկ մի վանդակում ծերացած մի դեղձանիկ էր ծվարել և կարծես աշխարհից խռոված նիրհում էր:

— Ինչո՞ւ է այդպես մռայլ,— հետաքրքրվեցի ես:

— Ընկերուհուն վաճառեցինք, հիմա մենակ է մնացել,— բացատրեց թռչնավաճառը:

— Իսկ չի՞ կարելի նոր ընկերուհի տալ նրան:

— Փորձում եմ, բայց ծերուկը շատ համառ է, չի ընդունում:

— Հապա վերջն ի՞նչ է լինելու:

— Դե ես գնողին խորհուրդ տվեցի երկուսին միասին վերցնել, չուզեց: Չեմ կասկածում, որ այն մյուսն էլ հիմա այնտեղ է տխրում: Ուրեմն, նոր տերը մոտ օրերս կգա խորհուրդ հարցնելու, ես էլ կխնդրեմ, որ այս ծերուկին տանի: Թող գնա կյանքի վերջին օրերն իր ընկերուհու հետ անցկացնի:

— Ուրեմն դեղձանիկներն այնքան սիրով են կապված, որ բաժանվելիս այսպես տխրում են, այո՞:

— Դա պայմաններից է,— ասաց նա:— Ազատության մեջ նրանք մտերմանում են միայն այն շրջանում, երբ հարկավոր է ձու դնել ու ձագ հանել: Այդ ժամանակ էգը թուխս է նստում, իսկ արուն նրա համար կեր է բերում: Հետո էլ միասին ձագերին են կերակրում, թռչել սովորեցնում: Իսկ երբ ձագերը դառնում են ինքնուրույն, ծնողները նրանց ազատ են արձակում և իրենք էլ բաժանվում են: Բայց այստեղ նրանց միակ աշխարհը վանդակն է: Ծնվում ու մեծանում են վանդակում, ուրիշ ծանոթություններ ու մտերմություններ չունեն և կապվում են միմյանց այնքան, որ երբ մեկին վաճառում ենք, մյուսն այսպես տխրում է: Ուրեմն, գնելիս պետք է զույգ դեղձանիկ գնել:

Մենք զրուցում էինք, երբ դարձյալ մի կանչ լսվեց: Այս անգամ կանչողը սիրունիկ մի սոխակ էր: Վանդակի ճաղին թառած կանչում էր նա ընդհատումներով ու մի տեսակ մտածկոտ:

— Սրա վիճակն ավելի ցավալի է,— ասաց թռչնավաճառը:— Մի շաբաթ առաջ մեռավ սրա ընկերուհին:

— Սրա՞ն էլ չի կարելի նոր ընկերուհի տալ,— հետաքրքրվեցի ես:

— Հիմա դեռ ոչ,— բացատրեց թռչնավաճառը:— Նրա ընկերուհին դեռ նոր է մեռել և հիշողությունը նրա մասին դեռ թարմ է: Եվ ապա, իմացած եղեք, որ սոխակներն էլ գարնանն են իրենց համար ընկերուհի գտնում: Գարնանը արու սոխակը մայրամուտի պահերին ու լուսաբացին երգում է, դայլայլում այնքան, որ հրապուրում ու իր մոտ է բերում էգին: Այդպիսով էլ նրանք ընտանիք են կազմում: Իսկ հիմա աշուն է և սոխակների համար նոր մտերմություններ ստեղծելու ժամանակը չէ:

Ես շատ խղճացի մենակ մնացած սոխակին և որոշեցի գնել ու տանել նվիրել Նունիկին, բայց թռչնավաճառը խորհուրդ չտվեց:

— Նա հիմա դեռ վշտոտ է, բայց իր տան մեջ է, իր սովորած միջավայրում: Իսկ եթե դուք տանեք նրան, իր ունեցած վշտի վրա մեկն էլ կավելանա՝ օտա-

թության վիշտը ու, հնարավոր է, որ չդիմանա:

Ես արդեն որոշել էի Նունիկի համար որևէ թռչուն գնել ու հարցրի թռչնավաճառին, թե ինչ կարող է առաջարկել ինձ:

— Մի զույգ թութակ,— ասաց նա:—.Բնավորությամբ ուժեղ արարածներ են, մի քիչ էլ անհոգ, շուտ կվարժվեն նոր պայմաններին:

Դե ինչ, ես մի զույգ թութակ գնեցի, գեղեցիկ մի վանդակ ու բերեցի հանդիսավոր կերպով նվիրեցի Նունիկին:

Մի տեսնեիք, թե որքա՜ն երջանիկ էր մեր Նունիկը: Այլևս աչքին ոչինչ չէր երևում, ամբողջ օրը կանգնում էր վանդակի կողքին ու բոլորին հաղորդում թութակների բոլոր շարժումները.

— Մա՛, իրենք ջուր են խմում... Մա՛, ընկույզ կերան... Հիմա էլ քնել են ուզում, մա՛, չխանգարե՛ս...

Նրանց պատշգամբը մերին կից էր, ու ես պարզ լսում էի Նունիկի աղմուկը և, ճիշտն ասած, մի քիչ փոշմանել էի արածիս համար: Այժմ նա ինձ էլ էր անհանգստացնում: Ծառունակ պատշգամբից դուրս էր կախվում ու ինձ կանչում, իսկ երբ չէի արձագանքում, զանգահարում էր.

— Մորաքո՜ւյր, թութիները քնից վե՜ր կացան... Մորաքո՜ւյր, այնքան լա՜վն են, ես կգժվեմ...

— Չգժվես, մինչև գամ,— կատակում էի ես ու ճարահատյալ գնում, քանի որ, միևնույն է, Նունիկն ինձ հանգիստ չէր տալու:

Իսկ թութակներն իրոք լավն էին՝ աշխույժ, կայտառ, հնարամիտ և աղմկարար: Արուն՝ մեծ գլխով ու փայլուն, կանաչ փետուրներով, գլուխկոնծի էր տալիս ու կարծես պարծենում էր.

«Ծա՜ռռ-ը՜... շա՜ռռ-ը՜...» Ընկերուհին էլ նրանից ետ չմնալով, կրկնում էր. «Ծա՜-շա՜-քի՛... շա՜-շա՜-քի՛...»

Էհ, եթե նրանք, առանց մեզ հարցնելու, իրենք իրենց համար անուններ էին ընտրել, մեզ մնում էր միայն հաստատել, և մենք մեկին Ծառլի կոչեցինք, մյուսին՝ Շաքե:

Նունիկի համար այլևս նոր գործ բացվեց: Ով էլ գար նրանց տունը, պիտի տաներ կանգնեցներ թութակների վանդակի մոտ և չատ խորհրդավոր տեսք առած կանչեր.

— Ծառլի՜-Շաքե՜...

Ծառլին կարծես արդեն հասկացել էր, որ դա ինքն է և տեղում պտույտներ գործելով, կրկնում էր իր անունը, իսկ Շաքեն մի քիչ դմբո էր ու իր անունը կրկնելու փոխարեն, երբեմն «Ծառլի» էր կանչում:

Մի որոշ ժամանակ հետո թութակներն սկսեցին ինչ-որ խաղաղվել, առաջվա նման չէին աղմկում, դարձել էին մի տեսակ լուրջ ու մտածկոտ: Նրանց զբաղեցնելու համար Նունիկը երբեմն բացում էր վանդակն ու թութակներին բաց թողնում ապակեպատ պատշգամբի մեջ: Մի քիչ ճախրում էին, բայց շուտով վերադառնում էին վանդակ ու սկսում հարդարել այնտեղ սարքված բույնը:

Շատ չանցած, բնում ձվեր հայտնվեցին՝ չորս ձու, և Շաքեն թուխս նստեց: Առաջին երեք օրը նա շատ հաստատուն էր նստել և ինչ անում, չէինք անում, տեղից չէր շարժվում ու դեռ բարկանում էր, երբ ուզում էինք կերակրել: Նունիկը շատ անհանգստանում էր, թե Շաքեն քաղցից կմեռնի: Բայց չորրորդ օրվա առավոտյան տեսանք՝ Շաքեին փոխարինել է Ծառլին: Զարմանալի էր ու ծիծաղելի, որ Ծառլին, տղամարդ տեղով, թուխս էր նստել ու ճտեր պիտի հաներ: Հավատացած, որ նա Շաքեի նման հիմար չէր, որ քաղցած նստեր, մենք նրան մանրացրած ընկույզ ու շաքարաջուր մատուցեցինք: Բայց Ծառլի մի ասա, մի կայծակ ասա՝ այնպես կռնչաց ու ֆշշաց, որ սուսուփուս հեռացանք:

Բայց շուտով Նունիկը նրանց կերակրելու ձևը գտավ: Ափսեի վրա տեսակ-տեսակ ուտելիքներ էր շարում, դնում էր պատշգամբի սեղանին և վանդակի





դուռը բաց էր թողնում: Նրանք փոխնիփոխ դուրս էին գալիս, կերակրվում և իսկույն մտնում էին վանդակ:

Այսպիսով, մեզ համար պարզվեց դարձյալ մի գաղտնիք: Թութակները չեն ուզում, որ որևէ մեկը մոտենա իրենց բնին, դրա համար էլ, երբ կեր ենք մատուցում, այդպես բարկանում են:

Մի անգամ էլ Շառլին իր հերթապահությունը վերջացրած, դուրս էր եկել վանդակից և հանգիստ նախաճաշում էր: Կերավ, կշտացավ, մի պտույտ գործեց պատշգամբում, ու մինչև Նունիկը կհասցներ պատուհանի բաց փեղկը փակել, Շառլիս փռռացնելով դուրս թռավ... Թե ինչպես էր պատուհանը բացվել, այդ բանը պարզելու ժամանակը չէր, մենք Շառլիին էինք հետևում: Նա գնացել թառել էր դիմացի ծառին և կարծես մեզ ձեռք առնելու համար անհոգ չռթացնում էր:

— Շառլի՛ ջան, անո՜ւշ ջան, տո՛ւն արի,— կանչում էր Նունիկը: Ես էլ խելքս տվել երեխային ու լըրջորեն համոզում էի անպիտան թութակին, թե՝ Շառլի, արածդ հիմարություն է, տուն արի: Իսկ նա գարնանաբույր օդից աշխուժացած, բոլորովին բանի տեղ չդրեց մեր կանչերն ու ճյուղից-ճյուղ ցատկոտելով՝ թռավ չքացավ:

Շատ տխրեցինք: Շառլիի համար էինք տխրում և Շաքեի: Ախր ո՞վ պիտի փոխարիներ Շաքեին, երբ նա նստելուց հոգներ և ուզենար կերակրվել: Չէ՞ որ ձվերը թեկուզ կես ժամ էլ բաց մնային, կարող էին փչանալ և այլևս ձագեր չէին ծնվի:

Բայց Շաքեն քաջը դուրս եկավ: Առաջին երեք օրը նա նստեց անշարժ, երբ վեր կենալու պահը եկավ, շուրջը նայեց, նույնիսկ ինչ-որ ձայներ արձակեց ու տեսնելով, որ Շառլին չի երևում, սկսեց տխուր ու աղաչական նայել Նունիկին:

— Նունի՛կ, դու ափսեով կերը տար դիր վանդակի՛ մեջ,— խորհուրդ տվեցի ես:

Պարզվեց, որ Շաքեի ուզածն էլ հենց այդ էր: Նա մի տեսակ կարծես շնորհակալությամբ նայեց Նունիկին և սկսեց ուտել:

Այսպես էլ Շաքեն մեն-մենակ ձագեր հանեց և շատ երջանիկ էր: Ամբողջ օրը հենց միայն իր կտուցով կերակրում էր նրանց, առնում թևի տակ ու արթուն նըստում, որպեսզի նրանք քնեին ու մեծանային: Ամեն ինչից երևում էր, որ նա արդեն մոռացել էր Շառլիին: Դա Նունիկին շատ էր զայրացնում, և նա խեղճ Շաքեի հասցեին ինչ ասեք ասում էր.

— Զզվելի՛ խոզ, չի՞ էլ ամաչում, ինքն էստեղ ուրախ ու կուշտ ապրում է, իսկ խեղճ Շառլին հիմա, ով գիտե, քաղցած մեռնում է: Սպասիր, Շառլիս վերադառնա, կտեսնես, ինչ համով բաներ կուտեցնեմ: Մորաքո՛ւյր, իսկ նա կվերադառնա, չէ՞:

Ես թեև նրան հույս էի տալիս, թե կվերադառնա, բայց ինքս համոզված չէի: Շառլին թութակ էր ու ոչ թե աղավնի, որ կարողանար տան ճամփան հիշել ու գալ:

Իսկ Շաքեի ձագերն արագ թափով մեծանում էին և ամռան վերջին այնքան էին խոշորացել, որ բոլորին նույն վանդակում թողնել չէր լինի:

Մի նոր վանդակ գնեցինք և ձագերից երկուսին առանձնացրինք: Շաքեն մնաց մյուս երկուսի հետ, բայց ուշքը շարունակ նորաբնակների կողմն էր: Հենց որ նրանք սկսում էին չարություն անել և իրար կտուցից կախվել, Շաքեն անհանգիստ թռչկոտում էր, ինչ-որ ձայներ արձակում, կարծես խրատելիս լիներ ջահելներին, թե հարկավոր է համերաշխ ապրել:

Արդեն աշուն էր, օրերն արագ թափով ցրտում էին, երևում էր, որ ձմեռն էլ շուտ էր գալու: Ծիծեռնակներն ու սարյակները վաղուց չվել էին, և մեր բակի ծառերին միայն ճնճղուկներն էին ցատկոտում:

Ես նստել աշխատում էի, բակին նայող պատուհանը բաց էր, և ինձ էր հասնում ճնճղուկների մրսած, մտահոգ ծվծվոցը: Նրանք երևի քննարկում ու ծրագրում էին, թե ինչպես են ապրելու մինչև գարուն: Եվ հանկարծ, ճնճղուկների այդ ծանոթ ու սովորական ծվծվոցի միջից տարօրինակ մի կանչ հասավ ինձ:

վեր կացա, մոտեցա պատուհանին և արդեն պարզ լսեցի.

«Շա-շա՛-ռո-լը՛... շա-շա՛-ռո-լը՛»:

Ճիշտն ասած, շատ շփոթվեցի, ինձ այնքան էի կորցրել, որ ուզում էի դուրս վազել, բայց ո՛ւր... Շառլին կանչում էր, բայց ինքը չէր երևում: Դարձյալ երկար նայեցի ու ծառի ամենաբարձր ճյուղին տեսա նրան: Մրսած, խեղճացած կուչ էր եկել ու մի տեսակ, կարծես մեղա գալով, կանչում էր:

Վերցրի լսափողն ու հուզված զանգահարեցի.

— Նունի՛կ, պատշգամբի բոլոր փեղկերը բա՛ց արա...

— Ինչո՞ւ, մորաքո՛ւյր, ցուրտ է...

— Բա՛ց արա և վանդակն էլ դիր պատուհանին մոտիկ:

Մինչև ես գնացի, Շառլին արդեն պատշգամբի բազրիքին էր ու կարծես ինձ էր սպասում, որ մեղավոր մնչյունով ներս սահեր: Թառեց վանդակի ձողին, հետո տեսավ կերը ու վրա ընկավ:

...Դրանից հետո ես գնացի թռչնավաճառի մոտ ու պատմեցի Շառլիի հետ պատահածը, և նա խելացի մի բացատրություն տվեց: Ասաց, որ Շառլին վանդակում ծնված ու մեծացած թութակ է, ամեն ինչ պատրաստ է ստացել և դրսի աշխարհում ինքնուրույն կերպով ապրել չէր կարողանա: Այնուհետև, նա չի ունեցել նաև իր ծանոթ միջավայրը, քանի որ Հայաստանում թութակներ չկան, նշանակում է դարձյալ մենակություն, որին նա չէր դիմանա և ուրեմն, պիտի վերադառնար իր սովորած միջավայրը:

Իսկ թե ինչպես էր նա գտել վերադարձի ճամփան, դա մինչև հիմա էլ զբաղեցնում է ինձ ու պատասխանը դեռ չեմ գտնում:



# ՊԱՂՊԱՂԱԿԻ

*ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ*

Վաչեն զարմանալի, անհավատալի երազ էր տեսել և առավոտյան ընկերոջն էր փնտրում՝ նրան պատմելու համար: Նույն գիշերը նույնպես անհավատալի երազ էր տեսել նաև Հայկը ու նա էլ Վաչեին էր փնտրում՝ իր երազը նրան պատմելու համար:

Երբ վերջապես իրար գտան, ամեն մեկը շտապում էր, ցանկանում առաջ ինքը պատմի:

— Սպասի՛ր,— ճչում էր Հայկը,— քո երազը երևի հետաքրքիր չլինի, առաջ ես պիտի պատմեմ:

— Ո՛չ,— գոռում էր մյուսը,— առաջ ե՛ս եմ պատմելու, մտքիցս կգնա: Ա՛յ քեզ երազ... Լսի՛ր, ուրե՛մն...

— Սպասի՛ր, ե՛ս եմ պատմելու, չխանգարես: Մանավանդ ես քեզանից վեց ամսով մեծ եմ:

— Լավ,— ասաց Վաչեն,— պատմի՛ր: Բայց՝ կարճ, որ ես էլ պատմեմ:

Հայկն սկսեց.

— Ուրեմն, երազում իբր պիտի ձկնորսության գնամ: Կարթերը, լսու՞մ ես, կարթերը, կարթաձողը, թելերը, դույլը՝ ամեն ինչ պատրաստ վերցրել, առավոտյան դուրս եմ գալիս, մեկ էլ երրորդի «բ»-ի Սուրիկը, ճանաչում ես, չէ՞: Նա, որ անձեռ հեծանիվ քշել չգիտի: Դա թե. «Հա՛յկ, գնանք մեր տուն, այսօր ծննդյանս օրն է»: Չէ,— ասացի,— շնորհավորում եմ, բայց գալ չեմ կարող, ձկնորսության եմ գնում, տեսնու՞մ ես դույլ-մույլը, ձկնորսության պետք է առավոտյան շուտ գնալ: Թե. «Ես անձեռ հեծանիվ քշել չգիտեմ, դրա համար էլ ինձ արհամարհում ես, չես ուզում մեր տուն գալ»: Ասացի՝ ես քեզ կսովորեցնեմ անձեռ քշելը, դրա համար ինչու՞ պիտի քեզ արհամարհեմ: Նա թե. «Չէ, դրա համար է»: Ճա՛րս ինչ, գնացի: Դրա մայրիկն այնքան թխվածք բերեց, երևի մի տոննա: Իսկականից: Թե. «Կե՛ր»: Կեսը կերա, ճա՛րս ինչ: Այդպես է՞լ երազ կլինի: Դույլը, կարթերը վերցրի, ելա բակ, հիմա էլ Սիրունիկն առաջս ելավ, թե. «Ծննդյանս տոնն է, Հա՛յկ, մեր տուն չե՞ս գա»: Ասացի, թե շատ ուրախ եմ, որ քո ծննդյան տոնն է, բայց արդեն կեսօր է, ձկնորսության եմ գնում: «Հա՛,—ասում է,—գիտեմ, աղջիկ եմ՝ դրա համար չես ուզում իմ ծննդյան օրը ինձ շնորհավորել: Եթե տղա լինեի, կգայիր»: Ճա՛րս ինչ: Գնացի: Սեղանին մի տորթ էր դրված՝ գինու տակառի չափ: Այդպես էլ երա՞զ: Դանակները վերցրեց, կտրեց այդ տակառի կեսը, դրեց առաջս: Ասում եմ՝ չեմ կարող այդքան ուտել: Սկսեց տզզալ: Ճա՛րս

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՖԵՍՏԻՎԱԼ

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*



ինչ: Հետո, փորս ավելի ուռեց: Հազիվ վերցրի դույլը-մույլը, դուրս եկա բակ, արդեն կեսօրն անց էր, ձկնորսները ի՞նչ պիտի մտածեն կեսօրից հետո ձկնորսության եկածի մասին: Դու Անդրանիկին ճանաչո՞ւմ ես, չորրորդի «գ»-ից. բասկետբոլի խմբում էր, ոտքը ոլորվեց, բժիշկն արգելեց խաղալ: Դա թե. «Հա՛յկ, ի՛նչ լավ էր, որ քեզ տեսա, այսօր իմ ծնունդն է, համեցե՛ք մեր տուն»: Այդ ո՞նց է, ասում եմ, այսօր բոլորիդ ծննդյան օրն է: Չէ, ասում եմ, փորս տրաքում է, չեմ կարող: «Ոտքս ոլորվել է, սկսել եմ կաղալ, ոչ ոք չի ուզում ինձ հետ ընկերություն անել: Բայց չէ՞ որ կանցնի, չէ՞ որ ես միշտ չեմ կաղալու: Հա՛յկ»: Տեսա նեղանում է, ճա՞րս ինչ, գնացի: Դրանց տորթը եգիպտական բուրգի չափ կլիներ: Ասում է. «Եթե լրիվ չուտես, հետդ չեմ խոսելու»: Ա՛յ Անդրանիկ, ասում եմ, ես այս բոլորը ո՞նց ուտեմ, գոնե պաղպաղակ լիներ, թե չէ ուր գընում եմ՝ տորթ, տորթ: Որ կաղալով հեռացավ, մեղքըս տվեց, այդ բուրգի կեսը կերա, փորս եղավ տրոլեյբուս, չեմ կարող շարժվել: Այդպես է՛լ երազ...

— Վերջացրի՞ր,— ասաց Վաչեն:

— Սպասի՛ր, արդեն վերջացնում եմ: Հա՛, ուրեմըն, դույլը-մույլը վերցրեցի, իջա բակ, արդեն օրը մթնում էր: Մտքումս ասացի՝ մի ձկնիկ էլ բռնեմ, բավական է: Բայց հազիվ էի շարժվում, փորս այնքան էր ուռել, որ ճանապարհը չէր երևում: Գոհարիկին ճանաչում ես, չէ՞, որ հեռուստատեսությամբ ելույթ ունեցավ: Հիմա էլ դա. «Հա՛յկ, Հա՛յկ ջան,— ասում է,— այսօր իմ ծննդյան օրն է...» Ես ավելի ապշեցի: Այդ ո՞նց է, որ այսօր բոլորի ծննդյան օրն է: Փախա մտա մեր տուն, մայրիկիս ասում եմ՝ մայրիկ, ոչ ոքի չասես, որ ես տանն եմ: Ուզում եմ մտնել մեր մահճակալի տակ, փորս խանգարում է: Մայրըս թե. «Ինչո՞ւ ես մտնում մահճակալի տակ, այս-

## ԿԱՆԱՉ ԴԱՍԱԳԻՐՔ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Ամառ է, անտառ՝ շշուկներով լի,
Լեռներ՝ քարեղեն խոհերով լեցուն,
Գետակն է ձորում վազում փրփրալի,
Արևն է ջրին փարվում, լվացվում...
Գաղտնիքներ ունի ամեն արահետ,
Եվ պատմություններ՝ ամեն քար ու թուփ,
Փոքրիկ թիթեռն է խոսում ծաղկի հետ,
Երգերի բեռից ծառն է սոսափում...
Լեռը ձյունապատ, կածաններն անթիվ,
Աղբյուրը վճիտ, կակաչները բոց,
Էջերն են կանաչ մեր դասագրքի,
Իսկ բնությունը՝ կենդանի դպրոց:
Թերթել ենք մարդիկ էջերը մեկ-մեկ,
Բայց վերջը գրքի դեռ շատ է հեռու,
Եվ գուցե հաջորդ տողերը հենց մենք
Կարդալու ենք և բացահայտելու...
Մտածում ենք այդ օրերի մասին,
Հանկարծ լսվում է շեփորի կանչը.
Թվում է՝ նորից կանչում է դասի
Մեր դպրոցական զանգի ղողանջը:

## ՍԱՐՅԱԿԸ

ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ

Ծղոտ-ծղոտ կտցով կրել,
Տաքուկ բույն է սարքել մի բուռ,
Բնում երեք ձու է դրել,
Նստել վրան հանդարտ ու լուռ:

Դեռ ձվերը նուտ չդառած,
Մտածում է հոգով եռուն,
Որ ձագերին թևին առած՝
Պիտի ճախրի, գնա հեռուն:

Պիտի տեսնի աչքը նրա
Իր փոքրերին՝ չալիկ-մալիկ,
Ու մայրական սրտի վրա
Ծլվլում են երեք բալիկ:

Շուրջն անդորր է, ոչ մի շշուկ,
Հովն է թեթև անցնում սարով:
Հազա՜ր բարով աշխարհ գաք դուք՝
Մոր երազի ճանապարհով:

պիսի օրը մի՞թե կարելի է ընկերներից թաքնվել»: Ինչու՞, ասում եմ ես, ի՞նչ է պատահել: «Այսօր,— ասում է մայրս,— քո ծննդյան օրն է»: Մտա սեղանատուն և ի՞նչ տեսնեմ. Մասիսի չափ մի տորթ մեր սեղանին: Մայրս թե. «Պիտի ուտես»: Ես վախից վեր թռա, տեսա երազ է... Ի՞նչ լավ էր, որ երազ էր... Դե հիմա դու՛ պատմիր:

Վաչեն սկսեց.

— Չխանգարես,— ասաց նա:— Ուրեմն, ես էլ տեսնում էի երազում՝ իբր Երևանում պաղպաղակի համաշխարհային փեստիվալ է:

— Ի՞նչ:

— Ասացի՝ չխանգարես: Երևանում պաղպաղակի համաշխարհային փեստիվալ է, ինձ էլ ընտրել էին ժյուրիի նախագահ: Անհավատալի երազ էր: Բերել են մի մեծ, հսկա սեղան են դրել, և սպիտակ խալաթով աղջիկները մատուցարանների վրա բերում են ամեն երկրի պաղպաղակ. ինքնաթիռով են իբր հասցրել Երևան: Ես պիտի ուտեմ և գնահատական նշանակեմ: Բերեցին սկզբից անգլիական դարչնագույն պաղպաղակ, մի ձմերուկի չափ: Գդալը վերցրի և լրիվ կերա: Այնքա՜ն քաղցր, անասելի սննդարար: Բերեցին ֆրանսիական՝ ձյունի նման սպիտակ պաղպաղակ, վրան կրեմով ֆրանսերեն գրած՝ «Փարիզ»: Այդ «Փարիզն» էլ կերա: Գնահատականները թաքուն եմ նշանակում: Բերեցին ճապոնական պաղպաղակ՝ յոթ հատ, ֆուտբոլի գնդակների չափ, ամեն մեկի վրա ճապոնական չամիչ ցանած: Կերա, բայց զգում եմ, որ սկսում եմ սառել: Բերեցին ավստրալիական, աֆրիկական, սովետական, մոնղոլական, նոր-զելանդական: Ինչ բերում են՝ ուտում եմ: Զարմանալի երազ էր, լրիվ սառել էի, ձեռքերս շարժվելիս ճռճռում էին: Մազերս, գլուխս լրիվ սառցակալել էին, հազիվ աչքերիս ու բերանիս համար անցքեր էին մնացել: Հետո բերեցին հեքիաթային մի պաղպաղակ՝ յոթ պինգվին, յոթն էլ տարբեր գույնի: Պաղպաղակը կոչվում էր «Էսկիմո-Ամերիկո»: Հա՜յկ, պատկերացնո՞ւմ ես, ուզում եմ գոնե մի քիչ համը տեսնել, բայց չեմ կարողանում այլևս, լրիվ սառել եմ, սառույց եմ դարձել, քիչ է մնում լաց լինեմ: Այդ զարմանալի «Էսկիմո-Ամերիկոն» դրել են առջևս, սեղանին, արևից կամաց-կամաց հալվում է, ջուր է դառնում...

— Գոնե ինձ զանգահարեի՛ր հեռախոսով,— համարյա ճչաց Հայկը, պարզ պատկերացնելով այդ հրաշք պաղպաղակի հալվելն ու ոչնչանալը:— Ինչու՞ չզանգահարեցիր:

— Ո՞նց չզանգահարեցի: Քանի զանգահարեցի, մայրդ ասաց՝ Հայկը գնացել է ծննդի, քանի զանգահարեցի, մայրդ ասաց՝ Հայկը գնացել է ծննդի...

# ԻՆՉՊԵՍ ՎԵՐԱԿԱՆԳՆՎԵՑ ԿԱՐՄԻՐ ՊԱՐՏԻԶԱՆԻ ՈՒ ԱՆԶՆՎԵՐ ՍԱՀՄԱՆԱՊԱՀԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ*

Ճիշտն ասած, դժվար էր վերականգնել նրա կենսագրությունը: Հովհաննես Մելքոնյանը իր ողջ կյանքում զինվորի հավատարմությամբ ծառայել է իր հայրենիքին, ծառայել է համեստորեն, բայց շատ հնարավոր է, որ այսօր չիմանայինք նրա մասին ոչինչ, եթե չլիներ հիսուն տարի առաջ «Պատկոմ» ամսագրին պատանի Երջաղի ուղարկած թղթակցությունը:

«Սեպտեմբերի 12-ին,— գրում է պատանի թղթակիցը,— Լենպատկազմի «Փարիզյան կոմունա» կոլեկտիվը մեկնեց Թուրքի Ղարաքիլիսա պատկոմական կնունք կատարելու համար: Գյուղում կարծես մեծ տոն էր, մեծ և փոքըր հավաքվել էին կալում... Կնքվելու էր կարմիրբանակային ընկ. Հովհաննես Մելքոնյանի երեխան... Անունը դրվեց Ռոզա (Ռոզա Լյուքսեմբուրգի հիշատակին), վերջում երեխային տրվեց մի շարք նվերներ և հայրը հայտնեց իր շնորհակալությունը»:

Այս պատմությանը ծանոթանալուց հետո, իմ մեջ ցանկություն առաջացավ անպայման գտնել Հովհաննես Մելքոնյանին ու նրա աղջկան, իմանալ ինչպես դասավորվեց նրանց հետագա կյանքը: Իմ թղթակցության վերջում, որը, եթե հիշում եք, տպագրվեց «Պիոներ» ամսագրի 50-ամյակին նըվիրված հոբելյանական համարում, ես խնդրել էի հայ պիոներներին՝ օգնել ինձ գտնելու Մելքոնյան ընտանիքի հետքերը:

Անցավ ընդամենը մեկ շաբաթ, և ես իրար ետևից երեք նամակ ստացա:

Ախուրիկից, որ նախկին Թուրքի Ղարաքիլիսան է.

«Հարցուփորձ ենք արել մեր գյուղի ու հարևան գյուղերի բոլոր ծերունիներին: Մեր շրջանում Հովհաննես Մելքոնյան կամ Ռոզա Մելքոնյան անունով բնակիչ չկա: Ասում են, չի էլ եղել: Բայց մենք շարունակում ենք որոնել»:

Լենինականից.

«Քաղաքում Հովհաննես Մելքոնյան անունով մեկը ապրել է: Բայց հիմա չկա: Նրա բոլոր հարազատները, ոմանց ասելով, տեղափոխվել են Երևան»:

Երևանից.

«Ռոզա Մելքոնյանը մեր հարևանուհին է: Բայց մենք չգիտեինք, որ նա այդպիսի հետաքրքիր անցյալ է ունեցել: Մենք սիրում ենք նրան իր բարի ու համեստ բնավորության համար»:

Եթե սրանց գումարենք այն բազմաթիվ նամակները, որոնց հեղինակները խնդրում էին հնարավորին չափ մանրամասն պատմել այդ ընտանիքի մասին, իմ որոնումները հասկանալի կդառնան: Եվ ահա ես Ռոզա Մելքոնյանի բնակարանում եմ: Նա սիրալիր, հյուրընկալ ժպիտով կին է:

— Այստե՞ղ է ապրում ձեր հայրը:

Նա հայացքը խոնարհում է ցած:

— Մահացավ... 1957 թվականին:

. . . . . . . . .

— Դուք գիտե՞ք, որ հիսուն տարի առաջ Լենինականի պիոներները ձեզ կնքել են պատկոմական ծեսով:

— Այո՛, այո՛: Շատ տարիներ առաջ, ես մի-երկու խաղալիք ու ծոպերով գլխարկ ունեի, որ հայրս խորհուրդ էր տալիս խնամքով պահել: «Դրանք քո կնունքի օրը Լենինականի պիոներներն են նըվեր բերել»,— ասում էր նա: Այն ժամանակ ես ընդամենը երեք ամսական եմ եղել: Պահեստի գնդապետ Լևոն Կարապետյանը, որը իմ կնքահայրն է եղել, շատ անգամ է պատմել, թե ինչպես է իմ անունը ինքը հորս հետ ընտրել:

Պահեստի գնդապետ Լևոն Կարապետյանը զբաղված մարդ է, բայց ժամանակ գտավ ինձ ընդունելու: Մենք նստած ենք իր աշխատասենյակում, գրքերով ծանրաբեռնված սեղանի մոտ: Պատին գնդապետի մեդալներով ու շքանշաններով զարդարված համազգեստն է:

— Դուք հիսուն տարի առաջ Հայաստանի սահմանամերձ գյուղերից մեկում կնքահայր եք եղել, հիշո՞ւմ եք:

— Հիշում եմ, հիշում,— ժըպտում է հին զինվորականը,— ես և իմ մարտական ընկերը՝ Հովհաննես Մելքոնյանը աշխատում էինք Ախուրիկ գյուղում: Մենք առանց հանգստի ու առանց քնի հսկում էինք մեր հայրենիքի սահմանները, այն հայրենիքի, որ նըվաճել էինք սեփական ձեռքերով ու մեր ընկերների արյունով: Այդ ժամանակ Հովհաննեսը երևի կլիներ քսանվեց տարեկան: Նա նոր էր Թբիլիսիում զինվորական կուրսեր ավարտել, ամուսնացել էր ու շատ երջանիկ էր իր առաջնեկով: Մի օր, ես նոր էի շտաբ մտել, երբ ներս եկավ Հովհաննեսը.

— Ընկե՛ր հրամանատար, ուզում եմ ձեզ մի անձնական հարցով դիմել:

— Դիմե՛ր,— ասացի ես:

— Ես ուզում եմ կնքել աղջըկաս, բայց նոր՝ պատկոմական ծե-

տով: Ուզում եմ խնդրել, որ կնքահայրը դուք լինեք:

Ես անմիջապես համաձայնվեցի: Բայց Հովհաննեսը կանգնել էր դռների մոտ ու տեղից չէր շարժվում:

— Էլի բա՞ն կա,— գլուխս բարձրացրի ես:

— Ընկե՛ր հրամանատար,— հայացքը ցած խոնարհեց նա,— ես ու կինս երեք գիշեր մտածում ենք ու չենք կարողանում աղջկա համար հարմար անուն գտնել: Խնդրում եմ, որ այդ հարցում էլ օգնեք:

Այդ մեկը, ճիշտն ասած, դժվար էր: Մենք մտածեցինք, մտմտացինք և կանգ առանք Ռոզա անվան վրա: Այդ օրերին Ռոզա Լյուքսեմբուրգի սխրագործության համբավը թնդում էր աշխարհում, նրա անունը շուրթից-շուրթ էր անցնում:

Նշանակված օրը ողջ գյուղը հավաքվել էր կալում: Ի՞նչ էր այդ ժամանակվա Ախուրիկը: Մի քանի գետնափոր տներ ու քարուքանդ հյուղեր, ուր ապաստան էին գտել թուրքական կոտորածից փախած գաղթականները: Հովհաննեսը, կինը և ես, երեխային գրկած երբ դուրս բերինք տանից, ճանապարհին հայտնվեցին պատկոմները: Նրանք դրոշակ էին բռնել ու գլխներից վեր պահել Լենինի մեծադիր նկարը: Պատկոմների շարասյունը կանգ առավ կալի մեջտեղում, ես վեր կացա ու խոսեցի նոր կարգերի և նոր ծեսերի նշանակության մասին: Հետո հայտարարեցի երեխայի անունը ու բոլորը ծափ տվեցին: Պատկոմները «Ինտերնացիոնալ» երգեցին և ապա հերթով երեխային մատուցեցին իրենց բերած նվերները: Ասենք, այսօր նույնիսկ ծիծաղելի է դրանք նվեր համարելը. մեկը օճառ էր տալիս, մյուսը՝ կոնֆետ, երրորդը՝ ինքնաշեն խաղալիք: Վերջում Հովհաննեսն ու իր կինը՝ Շուշանիկը հանդիսավորությամբ ինձ հանձնեցին երեխային: Ես մի քանի րոպե նրան լուռ պահեցի գրկիս մեջ ու փոխանցեցի պատկոմների ավագին: Այդպես յուրաքանչյուրը մի քանի րոպե գրկում էր Ռոզային ու հանձնում ընկերոջը:

Արդեն մութն ընկել էր, բայց ոչ ոք չէր ուզում տուն գնալ: Պատկոմական կնունքի այդ արարողությունը շատերին վարակեց: Դրանից քիչ անց, ես էլ իմ երեխային պատկոմական ծեսով կնքեցի. հետո մեր օրինակին հետևեցին շատերը:

— Ուրիշ ի՞նչ կարող եք պատմել Հովհաննես Մելքոնյանի մասին:

— Գիտե՞ք, պայքարի ու լարված աշխատանքի թոհուբոհի մեջ, մենք չզգացինք էլ, թե ինչպես կորցրինք իրար: Կուսակցությունը մեզ աշխատանքի ուղարկեց տարբեր բնագավառներ: Բայց ես գիտեմ, որ Հովհաննեսը Լևոն անունով մի տղա ունի, որը զինվորական է ու հավաքում է հոր արխիվը: Նա շատ նոր մանրամասներ կարող է պատմել:

Լևոն Մելքոնյանը զրուցակցին գրավում է առաջին հայացքից (քույրերն ասում են, որ շատ է նման հորը): Նա անկաշկանդ, սրտաբաց մարդ է, բայց անընդհատ խուսափում է խոսել հոր մասին: Երբ շատ եմ համառում, սեղանին փռում է ժամանակից խունացած փաստաթղթեր, լուսանկարներ, վկայականներ: Այդ անգույն, ծալծլված թղթերը մի ամբողջ կյանք են պարունակում: Պայքարի, զրկանքների, հաղթանակների բովով անցած կյանք:

Ահա մեր դարասկզբի հայ գյուղը. թշնամու անընդհատ հարձակումներից հյուծված, քաղցած ու բզկտված: 10—ամյա Հովհաննեսը քատրակ է, սրա-նրա տանը: Չարքաշ կյանքը պատանուն ստիպում է ընդվզել այդ անարդարության դեմ: Նա թողնում գնում է Ղարս, հետո՝ Թբիլիսի, Դոնբաս: Դոնբասում լեռնցի տղան շատ-շատ բաներ է իմանում նախապատրաստվող հեղափոխության մասին: Նա ոգևորությամբ ու հավատով վերադառնում է Հայաստան: Այստեղ արդեն սովետական կարգեր էին հաստատվել, բայց Հովհաննես Մելքոնյանի համար պայքարը շարունակվում է: Նա պաշտպանում է մեր հայրենիքի սահմանը օտար ոտնձգություններից, զենքը ձեռքին կռվում է ներքին թշնամիների՝ բանդիտների դեմ: Հեղափոխական մարտիկը միայն Հայրենական պատերազմին չկարողացավ մասնակցել: Նա ավտովթարի էր ենթարկվել: Բայց ձեռքերը ծալած չնստեց: Ընկերների հետ շրջում էր Լենինականի գյուղերը, պարեն, տաք հագուստ հավաքում ու վագոններով տանում Ստալինգրադ, որտեղ մահու և կենաց պայքար էին մղում սովետական մարտիկները:

...Երբ տարիների այս երկար վազքից սթափված՝ ես գլուխս բարձրացրի ու Լևոն Մելքոնյանին հարցրի, թե ինչո՞ւ հոր արխիվը թանգարան չի հանձնում, նա, որ արդեն փոխգնդապետ է, առանց նավակնության ասաց.

— Ես այս թղթերը հաճախ ցույց եմ տալիս իմ որդուն, Ռոզայի, մյուս քույրերիս որդիներին: Ես աշխատում եմ նրանց ոգևորել պապիկի օրինակով, ուզում եմ, որ նրանք այնպիսի անձնվիրությամբ ու անձնազոհությամբ ծառայեն իրենց երկրին, ինչպես դա արել է պապիկը:

Ես ոչինչ չեմ գտնում ավելացնելու: Ես գրելով այս պատմությունը, հավատում եմ, որ Հովհաննես Մելքոնյանը օրինակ կդառնա ոչ միայն իր թոռների, այլև այն բոլոր պիոներների համար, ովքեր կծանոթանան նրա կյանքին:

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐ
## (ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ)

### ԳԼՈՒԽԸ ԿՈՐՑՐԱԾ ՀԱՐԲԱԾԸ



Մի անձրևային օր երկու ընկեր գինետուն են մտնում մի-մի բաժակ գինի խմելու:

— Առաջին բաժակը խմենք մեր բարեկամության կենացը,— ասին ընկերները և կոնծեցին:

— Երկրորդը՝ մեր առողջության...

Եվ այսպես բաժակ-բաժակի ետևից խմելով, լավ հարբեցին:

Արդեն բավական ուշ էր, երբ նրանք վեր կացան գնալու: Մեկ-երկու քայլ չարած, հասկացան, որ չափը անց են կացրել:

— Երկար ժամանակ էր այսպես քեֆ չէինք արել:

— Նրանի ծանոթ մարդ չտեսնի, խայտառակ կլինենք:

Մտան նեղ մի փողոց և պատեպատ դիպչելով, ընկնելով ու բարձրանալով, հասան անձրևի ջրով լցված մի փոսի: Մեկի ոտքը սահեց և ընկավ ցեխի մեջ: Մյուսը ուզեց օգնել ընկերոջը, ինքն էլ գլորվեց: Ինչ արին-չարին, չկարողացան դուրս գալ ցեխից: Փողոցով անցնող-դարձող էլ չկար, որ օգներ նրանց: Հույսը կտրած, գլուխ-գլխի տվին, որ քնեն:

Քիչ անց մեկն սկսեց քորել գլուխը:

— Ի՞նչ ես անում,— հարցրեց ընկերը:

— Գլուխս եմ քորում:

— Տո հիմա՛ր, դա իմ գլուխն է:

— Ապա իմ գլո՞ւխը որտեղ է:

### ՀԱՐԲԱԾ ԿԱՐՈՆ



Կարոն հարբած էր, ձեռքը գլխից վեր պահած, երգելով գնում էր տուն:

— Կարո՛, երգում ես, երգիր, էլ ձեռքդ ինչո՞ւ ես վեր տնկել:

— Բա ռադիոն առանց անտենայի կլինի՞...

---

# ԲԱՑ ՍԱՐԵՐԻՑ ԴԵՊԻ ԱՆՏԱՌԻ ԹԱՎՈՒՏԸ

ՀԱՋԻԽ ՋՆԴԻ



Կար-չկար մի այծյամ կար, որ ապրում էր Արագածի բաց լանջերին: Նա ամեն տարի ձագեր էր բերում, հետները խաղում, ուրախանում, իրեն երջանիկ զգում: Բայց այդ ուրախությունը կարճատև էր լինում: Որսորդները ամեն անգամ բարձրանում էին սարերը, նրա փոքր ու անփորձ ձագերին հանդիպելով՝ սպանում կամ իրենց հետ վերցնում տանում:

Մայր այծյամը շատ էր տխրում, չէր իմանում ի՞նչ անի, գլուխը ո՞ր քարովը տա, ինչպե՞ս պաշտպանի իր ձագերին չար որսորդներից: Մի օր էլ որոշեց իջնել դաշտ, ճահճոտ լճակների մոտ, ուր, ասում էին, որսորդներ չկան:

Ճահճոտ լճակների մոտ նա շատ ծարավեց, ասաց՝ ջուր խմեմ: Մոտեցավ, տեսավ, որ ջրի երեսին միջատներ ու որդեր են վխտում: Այծյամը զզվանքով ետ քաշվեց:

— Չէ՛, այսպիսի ապականված ջրով ես իմ բալիկին չեմ մեծացնի, նա սովոր է Արագածի սառն աղբյուրներին...

Ճահճից հեռացավ և մոլոր գնում էր սարահարթով: Իրար հետ խաղացող երկու աղվեսիկի պատահեց:

— Դուք ի՞նչ գործ ունեք այստեղ,— հարցրեց աղվեսի ձագերին:

— Մենք որսորդություն ենք սովորում,— ասացին նրանք:

— Իսկ ի՞նչ եք որսալու:

— Քեզ նմաններին:

Այն ժամանակ այծյամն ասաց.

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՕԼԵԳ ԿՈՇԵՎՈՅԻ ԱՆՎԱՆ ՋՈԿԱՏԸ

Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի միջնակարգ դպրոցի Ջահան Կարախանյանի անվ. դրուժինան ունի 14 ջոկատ, որոնցից 7-ը համամիութենական «Միշտ պատրաստ» երթին ակտիվ մասնակցելու, ուսման մեջ և դաստիարակչական աշխատանքներում ունեցած հաջողությունների համար արժանացել են աջթևայինի կոչման:

Դրուժինայում լավագույնը Օլեգ Կոշևոյի անվան ջոկատն է (7-րդ «գ» դասարան): Այս ջոկատի բոլոր անդամները սովորում են «լավ» և «գերազանց» գնահատականներով, ընդգրկված են արտադասարանական, առարկայական խմբակներում և ֆակուլտատիվներում: Մասնակցելով «Իմ հայրենիքը ՍՍՀՄ-ն է» էքսպեդիցիային, ջոկատը շրջանում գրավել է առաջին տեղը: Գնալով Հայրենական պատերազմի մասնակից համագյուղացիների հետքերով, ջոկատի պիոներները հավաքել են ճակատայինների նամակներ, լուսանկարներ, փաստաթղթեր և ստեղծել են փառքի անկյուն: Հայրենական պատերազմում զոհվածներից 5-ի՝ Սարգիս և Աբրահամ Սարգսյանների, Արամայիս Անտոնյանի, Անուշավան Գևորգյանի, Հակոբ Հակոբյանի թոռնիկները Օլեգ Կոշևոյի անվան ջոկատի պիոներներ են:

ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի օրերին ջոկատում կազմակերպված ինտերնացիոնալ-բարեկամության խմբակը նամակագրական կապեր է հաստատել Խարկովի, Դնեպրոպետրովսկի, Թբիլիսիի պիոներների հետ: Հավաքած նյութերով պիոներները ջոկատում ձևավորել են բարեկամության անկյուն:

Ջոկատի թիմուրականները քննարկել են Թիմուրի համամիութենական շտաբի հանձնարարությունները, որոշել իրենց անելիքները ամբողջ տարվա համար: Նրանք նաև օգնում են ավագներին գարնան դաշտային աշխատանքներում, մասնակցում բնության պահպանության գործին, շեֆական կոմերիտական դասարանի հետ անցկացնում են շաբաթօրյակներ և կիրակնօրյակներ:

Մեծ ոգևորությամբ մասնակցում են ՊԱՊ բազմամարտի ծրագրով անցկացվող միջոցառումներին:

Ջոկատի պատանի ստեղծագործողները դասղեկ ընկ. Գևորգյանի ղեկավարությամբ ճաշակով ձևավորել են իրենց դա-

---

— Վա՜յ ինձ, վա՜յ իմ ձագին: Որ այդպես է, ես այստեղ մնացողը չեմ:

Եվ այծյամը շարունակեց իր ճանապարհը: Գնաց-գնաց հասավ Ծաղկունյաց անտառին: Այդտեղ կաղին կար թափթփված ծառերի տակ, թփերի վրա հատապտուղներ կային, իսկ բացատներում խոտն այնպես բարձր էր, որ նրա մեջ կարող էր այծյամների մի ամբողջ հոտ թաքնվել: Առաջ գնաց, մտավ անտառի թավուտի մեջ, ուր աղջամուղջ էր տիրում: Այդտեղ իրար շուլալված այնպիսի թփուտներ կային, որոնց մեջ ընկնողը կկորչեր:

— Ա՜յ իսկական ձագ թաքցնելու տեղ,— մտածեց մայր այծյամը և այդ օրվանից դարձավ անտառի բնակիչ:

Ամեն մայիսի նա մեկ-երկու ձագ էր բերում մթին թավուտում, նրանց թաքցնում էր թփերի մեջ և հանգիստ թե՛ արածում էր շրջակայքում, թե՛ հսկում իր ձագերին: Երբ այդ կողմերում որսորդ էր երևում, մայրը քնքուշ ձայնով զգուշացնում էր ձագերին, իսկ ինքը փախս էր տալիս ծառերի արանքներով և իր հետևից գրավում տանում, ձագերից հեռացնում էր որսորդներին:

Իսկ ձագերը մոր ձայնը լսելուն պես, խցկվում էին թփերի տակ ու մնում էին անշարժ, մինչև որ անցներ վտանգը: Այնպես էին սսկվում, որ անցնողը չէր կասկածի, թե երկու քայլ այն կողմ կենդանիներ կան թաքնված:

Ահա ինչու այծյամները այլևս բաց տեղերում չեն ապրում: Նրանք անտառի բնակիչներ են:



սարանը, ստեղծել կանաչ անկյուն, «Ծաղիկների աշխարհում» ցուցափեղկ, «Իմ հայրենիքը լուսանկարներում» վահանակը և ջոկատի սիրած գրքերի փոքրիկ գրադարանը: Դպրոցի երգչախմբում, պարի և ֆոտո խմբակներում ընդգրկված են դասարանի աշակերտների կեսից ավելին: Ջոկատն ունի իր թատերական խմբակը, որը ֆրանսերեն լեզվով բեմադրեց «Կարմիր գլխարկ» հեքիաթը:

Դրուժինայի խորհրդի հանձնարարությամբ ջոկատը դարձել է 1-ին «գ» դասարանի կոլեկտիվ հոկվարը: Պիոներները հոկտեմբերիկներին սովորեցնում են երգել, պարել, նրանց հետ աճեցնում են ծաղիկներ, ստեղծում են հավաքածուներ և հերբարիումներ, ծանոթացնում են հոկտեմբերիկների կանոնների, Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության տարեգրության հետ:

*ԹԵՎՈՍ ՊԵՏՐՈՍՅԱՆ*

ՆԿ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՌԱՔՅԱՆԻ



# ՕՐԸ ԱՐԵՎՈՎ ԷՐ ՉԱՓՎՈՒՄ



Վարդենիսի դպրոցական արտադրական բրիգադի անդամներին մենք հանդիպեցինք մայրուղու երկայնքով ձգվող ընդարձակ խոտհարքում: Հավասար հեռավորությամբ շարված աղջիկները նոսր խոտը փոցխելով փոխանցում էին միմյանց, իսկ վերջինի մոտ այն կուտակվում էր:

Յոթանասունամյա Արսեն պապիկը Էմմայի փոցխի կոտրված մատը նորոգելով պատմում է, թե որքան դժվար է անփորձ պատանիների համար ամբողջ օրը կիզիչ արևի տակ աշխատել:

— Երբեմն ջուր խմելու և հաց ուտելու ժամանակ էլ չի լինում,— ասում է պապիկը,— բայց դպրոցականները, ապրե՛ն, աշխատում են առավոտից-իրիկուն և կատարում են օրվա առաջադրանքը:

Տարոնը ուզում է իր պապիկին ու Կնյազ հայրիկին էլ իրենց բրիգադի անդամ դարձնել:

— Նրանք դպրոց չեն հաճախում, բայց ամբողջ օրը միասին ենք աշխատում՝ պապիկս փոցխ է անում, իսկ հայրիկս՝ տրակտորով տուկավորում է խոտը, մեզ էլ տրակտոր քշել է սովորեցնում:

Ութերորդ դասարանցի Վարսիկ Բաբայանը կարտոֆիլ ու կաղամբ մշակելուց ու խոտ հավաքելուց արդեն 80 աշխօր էր վաստակել: Նրա օրինակին էին հետևել նաև արտադրական բրիգադի մյուս անդամները՝ Հասմիկը, Գեղեցիկը, Համեստը, Էդիկը, Ռոզան, Տարոնը, Արտակըն ու էլի շատ պիոներ-դպրոցականներ:

Երբեմն վարդենիսցի դպրոցականները էլ հանգստյան օր են ունենում: Երբեմն, որովհետև, եթե աշխատանքային օրը արևով է չափվում, ապա հանգիստը՝ անձրևով: Անձրևոտ օրերին, երբ հնարավոր չի լինում խոտ հավաքել, կոլտնտեսությունը մեքենա է տրամադրում դպրոցականներին, որ էքսկուրսիաներ կազմակերպեն հանրապետության տեսարժան ու պատմական տարբեր վայրեր:

ՀԼԿԵՄ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար Հովհաննես Մելքոնյանը տեղեկացնում է, որ շրջանի բոլոր գյուղերում էլ ստեղծված են դպրոցական արտադրական բրիգադներ, և եթե նրանք չօգնեն կոլտնտեսություններին, ապա բանջարեղենի մշակման, խոտի ու բերքի կուտակման աշխատանքում լուրջ դժվարությունների առաջ կկանգնեն տնտեսությունները:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

# ՀՐԱՉՅԱ ԱՃԱՌՅԱՆԻ ՀԵՏ

ԳԱՌՆԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ

Նա ճշտապահությունը համարում էր մարդու նկարագրի ամենաէական հատկանիշներից մեկը, նրա հաջողության գրավականը, աշխատասիրության ուղեցույցը:

— Ժամանակի անօգուտ վատնումը ավելի մեծ վնաս է,— ասում էր,— քան նյութական կորուստը:

Ճշտապահ էր տանը, հասարակական կյանքում, համալսարանում:

Սովորաբար զարթնում էր առավոտյան 6 անց կեսից 7-ը: Աշխատում էր մոտ մեկ ժամ, մի քիչ հանգստանալուց հետո նախաճաշում էր, ապա նորից նստում գրասեղանի առաջ:

Ճշտապահ էր հատկապես համալսարանական պարապմունքների ընթացքում. գալիս էր ճիշտ ժամանակին, գնում ճիշտ ժամանակին, դասաժամը օգտագործում էր լրիվ, առանց կողմնակի հարցերով ուսանողներին զբաղեցնելու: Եթե մերթընդմերթ որոշ բան պատմում էր, ապա բացառապես կապված նյութի հետ: Չէր սիրում դասերից հետո լսարանում զրույցի բռնվել: Եթե մեկնումեկը ցանկանում էր նրան բան հարցնել, կարող էր ուղեկցել մինչև տուն: Փոխադրական նստել չէր սիրում. ոտքով էր գնում և՛ համալսարան, և՛ գիտությունների ակադեմիա: Բարեբախտաբար Երևանում ապրած իր 30 տարիների ընթացքում նրա զբաղեցրած երեք բնակարաններն էլ քաղաքի կենտրոնում լինելով, դժվարություն չէին հարուցում: Ոտքով գալը նույնպես նպաստում էր ճշտապահությանը, գիտեր, թե քանի րոպեում տանից կարող էր հասնել համալսարան կամ ուզած տեղը: Ճանապարհին երբեք մեկնումեկի հետ խոսելու համար կանգ չէր առնում: Անբաժանելի ձեռնափայտը ձեռքին, թղթերը թևի տակ, հանգիստ քայլում էր ու գրուցում: Պատահել է, որ իրեն ուղեկցող մարդկանց հետ էլ չի ցանկացել խոսքի բռնվել: Մի օր նրա ուսանողներից մեկը փողոցում հանդիպելով ուսուցչին՝ մտնում է նրա թևը ու միասին քայլում են: Ճանապարհին բազմաթիվ հարցեր է տալիս, որոնցից ոչ մեկին Աճառյանը չի պատասխանում: Երբ մոտենում են համալսարանին, նոր միայն նա խոսում է: Ուսանողը հարցնում է, թե ինչու առաջ անուշադրության էր մատնում իր հարցերը:

— Մտքումս դասի ծրագիրն էի կազմում, զբաղված էի, հիմա ազատ եմ,— պատասխանում է նա:

Աճառյանի ճշտապահության մասին տարածված են տասնյակ անեկդոտներ: Այսպես օրինակ: Մի օր համալսարանի դասախոսներից մեկը ցույց տալով պատից կախված ժամացույցը, ասում է ուսանողներին.

— Մտեք լսարա՛ն, ժամը 9-ն է:

Ուսանողները պատասխանում են.

— Ո՛չ, ժամը ինը չկա, Աճառյանը չի եկել:

Ճշտապահությունը խստորեն կիրառում էր նաև ժողովների, նիստերի ընթացքում: Ժամանակի արժեքը չիմացող մարդկանց սովորեցնելու համար, թե որքան թանկ բան է այն, հաճախ թույլ է տվել անքաղաքավարի թվացող արարքներ: Այսպես, մի անգամ Սովետական Հայաստանի բնակավայրերի անունների փոփոխության հարցով մի նիստ է գումարվում, ուր հրավիրում են նաև Աճառյանին: Աճառյանը քարտուղարուհուն հարցնում է և իմանում է, որ նիստը սկսվելու է 10-ին, տևելու է երկու ժամ: Նա ներկայանում է ժամը 10-ին, նստում ընդունարանում, սպասում մինչև ժամը 12-ը:

— Է՛հ,— ասում է,— ձեր ժողովը հիմա վերջացած պիտի լիներ, ես գնացի:

Եվ ճիշտ այն պահին, երբ ներսում սկսվում էր նիստը, նա թողնում գնում է:

* * *

Գիտությունը նրա համար սրբազան տաճար էր, որի դռնից ներս մտնողը գիտական պաշարի հետ պետք է ունենար երկյուղած հարգանք գիտության նկատմամբ:

Նա խստորեն հետևում էր օգտագործած աղբյուրների հավաստիությանը, փաստը ստուգում միմյանցից տարբեր, առավել հավաստի աղբյուրներով, կանգ առնում ավելի համոզիչի վրա, միշտ հիշատակելով հեղինակին: Ուրիշի մտքերի, եզրակացությունների յուրացումը համարում էր գողությունից ավելի ծանր մեղք՝ սրբապղծություն: Նյութական գողությունը կապված է երկու անհատների իրավունքի հարաբերության հետ, ասում էր, մինչդեռ գիտական գողությունը հանրային բնույթ ունի:

1898 թ. նա Ստրասբուրգում լսել էր Հյուբշմանին: Իրեն հատուկ ջանասիրությամբ գրեթե սղագրել էր նրա դասախոսությունները, որոնցում կային ուշագրավ դիտողություններ, տասնյակ հայերեն բառերի ստուգաբանություններ: Պատահեց, որ Հյուբշմանը հնարավորություն չունեցավ տպագրել դրանք. նա վախճանվեց 1908 թ.: Այսպիսով Աճառյանի տրամադրության տակ էին Հյուբշմանի այդ բոլոր ստուգաբանությունները: Նա դրանք օգտագործել է «Արմատական բառարա-

նում»՝ յուրաքանչյուր բառի տակ նշելով, թե այդ բացատրության հեղինակն է իր ուսուցիչը՝ Հյուբշմանը:

Նամակագրական կապի մեջ էր տասնյակ հայագետների հետ, որոնք պատասխանելով նրա հարցերին, կարծիքներ են հայտնել այս կամ այն բառի ստուգաբանության մասին, հաճախ կատարել արժեքավոր դիտողություններ, գյուտեր: Աճառյանը գիտական նույն բարեխղճությամբ է վարվել բոլոր դեպքերում, այս կամ այն փաստը, բացատրությունը օգտագործելիս, նշել, թե ով, որ թվականի, որ ամսին գրած նամակում է հայտնել այդ կարծիքը:

Նույն ձևով էր վարվում իր շրջապատի մարդկանց նկատմամբ: Նրա «Արմատական բառարան», «Հայոց լեզվի տեսություն», «Անձնանունների բառարան», «Լիակատար քերականություն հայոց լեզվի» և այլ աշխատություններում կարելի է գտնել մեր օրերի տասնյակ մարդկանց անուններ, որոնք նրան հուշել են այս կամ այն միտքը, փաստը, օգնել են որևէ հարցում:

«Հայոց լեզվի պատմության» Բ հատորի շարադրման ընթացքում, երբ արդեն գրեթե չէին տեսնում նրա աչքերը և հնարավորություն չուներ անձամբ գրքերից կամ մամուլից փաստեր արտագրելու, նա ինձ խնդրեց հայատառ թուրքերեն թերթերից արտագրել և իրեն հանձնել թուրքերեն այնպիսի մի հատված, որտեղ լինեին հայերեն բառեր: Ես արտագրեցի նման մի հատված և տվեցի իրեն. շատ գոհ մնաց, հենց իր տեսակետը հիմնավորող հատված էր, որտեղ 20 տողանոց թուրքերեն մի լուրի մեջ կար տասից ավելի հայերեն բառ (վիճակ, եպիսկոպոս, շրջաբերական, խառն ժողով, դատաստանական ժողով և այլն):

Երբ գիրքը լույս տեսավ, զարմանքով նկատեցի, որ վերոհիշյալ հատվածից առաջ նա գրել էր, թե այն իր համար հայթայթել է իր նախկին աշակերտ, այժմ գիտնական այսինչ այսինչյանը: Եղա իր մոտ և հարցրի, թե կարիք կա՞ր նման բացատրության՝ թերթերից արտագրված մի քանի տողի համար: Լուռ լսեց, մի քանի րոպե սպասեց և ապա ժպտալով ասաց.

— Կարծում ես քեզ լավություն անելու կամ աշխատանքդ գնահատելու համա՞ր եմ գրել այդ տողերը:

— Հապա ինչո՞ւ եք գրել:

— Հատվածի ճշտության պատասխանատվությունը գցում եմ քեզ վրա: Ամբողջ գրքում այս միակ հատվածն է, որ անձամբ չեմ ստուգել, թող ընթերցողը իմանա, որ այդ հատվածի պատասխանատուն դու ես:

Բացատրությունը այնքան բնական էր ու բանական, որ ոչինչ չէի կարող ասել:

Մի օր էլ նա կանչում է իր ուսանողներից երկուսին և ասում, թե լեզվաբանության մեջ կա երկու տեսակետ՝ մտածողության արտաբերման մասին. ոմանք գտնում են, որ մարդիկ խոսելուց առաջ բառերով են մտածում, ուրիշները կարծում են, թե նախադասություններով են մտածում: Այս բանը ճշտելու համար, ասում է նա, լավ կլինի լսել Աշխարհաբեկ Քալանթարի դասախոսությունը, քանի որ նա խոսելիս հաճախ որևէ միտք հայտնելուց առաջ սովորություն ունի ասելու՝ ը՛-ը՛-ը՛:

Աճառյանը ուսանողներից մեկին առաջարկում է հաշվել բառերից առաջ արտասանված ը-ը-ը-երը, մյուսին՝ նախադասություններից առաջ: Իր վրա էլ վերցնում է ընդհանուր հսկողությունը: Գընում, երեքով բազմում են լսարանում: Դասախոսը, անտեղյակ Աճառյանի մտադրությանը, ուրախանում է, որ նա իր աշակերտներով եկել է իրեն լսելու: 20—25 րոպե լուռ լսելուց հետո, հանկարծ Աճառյանը ոտքի է կանգնում և ասում է իր ուսանողներին.

— Է՜հ, բավական է, բան դուրս չեկավ: Այս մարդը ոչ միայն բառերից ու նախադասություններից հետո է ը-ը-ը ասում, այլև՝ չինացիների նման՝ վանկերից հետո էլ:

# ԼՃԱՑՈՒՄ

*ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԻՐԱՍ*

Մի պղտոր լճակ ասաց գետակին.
— Ասա՛, ինչի՞ց է, որ քո հատակին,
Ո՛չ տիղմ է նստում և ո՛չ էլ ավազ,
Եվ քո ջրերն են միշտ մաքուր ու պարզ:—

Պատասխան տվեց գետակը այսպես.
— Նրանից է, որ կանգնած չեմ քեզ պես:
Ես էլ իմ տեղում թե երկար մնամ,
Անշուշտ քեզ նման պիտի լճանամ:



# ԱՌԵՂԾՎԱԾԱՅԻՆ ՌՈՄԲԵՐ

Ա. ՍԱՆԴԵՐՍՈՆ

Միջերկրականի ծովում նավերը խորտակվում էին դեռևս հին հույների պատմական ասպարեզ իջնելուց առաջ։ Հյուսիսային Ատլանտիկայում ևս նավերը խորտակվում էին շատ հնում, բայց և այնպես քավական է, որ մի որևէ նավ անհետանար օվկիանոսի այդ մասերից մեկում, որ հազարավոր մարդիկ սկսեին գլուխ կոտրել, թե ինչու ողբերգությունը կատարվեց հենց այդտեղ։

Հյուսիսային Ատլանտիկայի որոշ շրջանների մասին, տարիների ընթացքում, այսպես ասած, վատ համբավ էր տարածվել։ Բերմուդյան կղզիների և Ֆլորիդայի ու Պուերտո-Ռիկոյի կենտրոնական մասի միջև ընկած տարածությունում հաճախ էին նավեր և օդանավեր անհետանում։ Այդ շրջանը անվանվեց «Բերմուդյան եռանկյուն»։ Դժվար է ասել, թե որտեղից առաջացավ «եռանկյուն» անունը։ Իրականում, այդ շրջանը մոտավորապես ռոմբաձև էր։ Մենք քարտեզի վրա նշեցինք նավերի և օդանավերի անհետացման բոլոր դեպքերը և հայտնաբերեցինք, որ այդ շրջանը շատ է հեռանում, այսպես ասած, «եռանկյան» սահմաններից։ Բնականաբար, հարց առաջացավ. քարտեզի այդ տարօրինակ բիծը միա՞կն է արդյոք մեր մոլորակի վրա։

Համենայն դեպս, առաջ նշում էին ևս մի այդպիսի շրջան։ Դա գտնվում էր Ճապոնիայի Խոնսյա կղզուց մոտ 250 մղոն դեպի հարավ։ Մենք սկսեցինք տեղեկություններ հավաքել այդ շրջանում անհետացած նավերի և օդանավերի վերաբերյալ։ Արդյունքն ապշեցուցիչ էր։ Օդանավերն անհետանում էին Գուամ կղզուց դեպի հարավ գտնվող գծի վրա։ Մենք այդ բոլորը նշում էինք քարտեզի վրա։ Եվ չնայած որ աղետից առաջ շատ հաճախ կապը կտրված էր լինում և աղետի կոորդինատները մոտավոր էին լինում, ստացվեց մեկ ուրիշ ռոմբ։

Սկզբում դա մեզ ինչ-որ չափով զարմացրեց։ Բայց երբ նայեցինք քարտեզին, տեսանք, որ այդ երկու շրջաններն էլ ընկած են, կոպիտ ասած, հյուսիսային լայնության 30 աստիճանի մոտերքում և ձգվում են արևելքից-արևմուտք մոտ երեսուն աստիճան։ Մենք դիմեցինք գլոբուսի օգնությանը։ Պարզվեց, որ այդ սարսափելի շրջանները գտնվում են հյուսիսային կիսագնդի հակադիր կողմերում՝ ճիշտ դեմ-դիմաց։

Բայց անսպասելիորեն պարզվեց, որ Միջերկրական ծովում ևս տեղի են ունեցել նավերի և օդանավերի առեղծվածային անհետացման դեպքեր։

Այդ ծովը ևս ռոմբի ձև ունի և ընկած է հյուսիսային լայնության 30-40 աստիճանների միջև ու ձըգվում է ձախից աջ, մոտավորապես 30 աստիճան։

Այսպիսով մենք ստացանք հաջորդաբար դասավորված երեք օբյեկտ։ Եթե հյուսիսային կիսագընդում կան երեք այդպիսի շրջաններ, թերևս լինեն նաև հարավային կիսագնդում։ Երբ մենք ուսումնասիրեցինք արխիվները, պարզվեց, որ հասարակածից դեպի հարավ կան երեք համանման շրջաններ։ Դրանք գտնվում են Հարավային Ամերիկայում, հարավային Աֆրիկայում և Ավստրալիայի հարավային ափերի մոտ։ Եվ ընկած են 30—40 աստիճանների սահմաններում։

Այդ տարօրինակ շրջանների դասավորվածության կանոնավորությունը Երկրի վրա պիտի որ ունենար իր բացատրությունը։ Ես դիմեցի աչքի ընկնող ինժեներների, էլեկտրամագնիսաբանների և գեոֆիզիկների օգնությանը։ Սկսվեցին ֆիզիկայի օրինաչափությունների որոնումներ, որոնցով հնարավոր կլիներ պարզաբանել այդ խնդիրը։ Նկատվեց, որ հասարակածից հարավ ընկած բոլոր շըրջանները, հյուսիսայինի համեմատությամբ, հավասար աստիճաններով ձգվում են դեպի արևելք։ Այնուհետև մենք ուշադրություն դարձրեցինք այդ առեղծվածային շրջանների բնական գործոնների՝ օդի ջերմաստիճանի, մթնոլորտի ճնշման, երկրամագնիսական անկանոնությունների վրա։ Պարզվեց, որ շատ հետաքրքրական է օվկիանոսների մակերեսային հոսանքների բնույթը։

Առեղծվածային ռոմբերը գտնվում են այնտեղ,

## ՊՐԵԶԻԴԵՆՏԸ ԵՎ ՏԵՐ ԱՍՏՎԱԾԸ

Ֆինլանդիայի պրեզիդենտ Ուրխո Կեկկոնենը իր հիշողությունների գրքում պատմում է մի այսպիսի հետաքրքիր դեպք:

Պրեզիդենտի պաշտոնը ստանձնելուց շատ չանցած՝ նրա մոտ է գալիս կապի մինիստրը: Մինիստրը հայտնում է պրեզիդենտին, թե փոստարկղում գտնվել է մի նամակ, որը հասցեագրված է «Տեր աստծուն»: Քանի որ ֆինն փոստատարները դեռևս չեն յուրացրել երկինք տանող ճանապարհը, որոշել են նամակը վերադարձնել տիրոջը, որը գյուղական ընտանիքի մի փոքրիկ տղա է:

Կեկկոնենը խնդրում է նամակը իրեն հանձնել:

Նամակում միամիտ տղան գանգատվում է ամենակարող աստծուն դառը կյանքից և խնդրում է օգնել, ուղարկելով 1000 մարկ:

— Հազար մարկն, իհարկե, բավական մեծ գումար է,— մտածում է պրեզիդենտը,— բայց պետք է երեխային օգնել...

Եվ կարգադրում է իր անձնական հաշվից տղային ուղարկել 500 մարկ:

Մի քանի օր հետո կապի մինիստրը բերում է մի նոր նամակ՝ նորից նույն տարօրինակ հասցեով: Տղան գրում է. «Թանկագի՛ն աստված, շնորհակալություն, որ կատարեցիր իմ խնդրանքը: Բայց հաջորդ անգամ խնդրում եմ դրամը չուղարկեք պրեզիդենտի միջոցով, թե չէ նա նորից ձեր ուղարկածի կեսը կյուրացնի»:




ուր կան օվկիանոսի վերևի մակերեսի տաքացած ջրերի հսկայական ջրապտույտներ: Այստեղից տաք ջրերի հոսանքները անցնում են դեպի համեմատաբար ցուրտ շրջաններ: Քանի որ գիտությանը ճշգրիտ կերպով հայտնի է, թե ինչու են տաքացած ջրերի մրրկածուփ զանգվածները գտնվում հատկապես իրենց տեղերում, այդ շրջաններին հատուկ բոլոր տարօրինակ և խորհրդավոր երևույթները, հավանաբար, տեղի են ունենում միևնույն պատճառով: Բայց մի կարծեք, որ նավերի և օդանավերի անհետացումը այդ շրջաններում նրանց միակ տարօրինակությունն է: Այստեղից հատկապես հաճախ են հաղորդում այսպես կոչվող «թռչող ափսեների» և այլ չպարզաբանված թռչող օբյեկտների մասին:

Էլեկտրամագնիսաբանները համառորեն պնդում էին, որ մենք գործ ունենք հինգ զույգ «երկբևեռ»ների, այսինքն միմյանցից փոքր հեռավորության վրա գտնվող հավասար մեծության, բայց տարանուն լիցքերի հետ և դրանք են բոլոր տարօրինակությունների պատճառը: Հարկ եղավ զոհաբերել գլոբուսներից մեկը: Ծակելով այն հինգ շյուղերով, մենք համոզվեցինք, որ էլեկտրամագնիսաբանները ճիշտ են. ամեն անգամ, երբ գլոբուսի մեջ մտցրած շյուղը միացնում էր հակադիր զույգ ռոմբերը, ապա նա անպայման անցնում էր երկրագնդի ճիշտ կենտրոնով:

Այստեղից ի՞նչ հետևություն պետք է անել: Հավանաբար, երկրագունդը կտրում անցնում են մագնիսական հսկայական ձողեր, որոնք ինչ-որ կերպ անցնում են նրա կենտրոնով: Եվ քանի որ այդ բոլոր շրջանները գտնվում են բնակեցված վայրերի և ջրային կարևոր խաչմերուկների մոտ, բոլորովին էլ զարմանալի չէ, որ նավերն ու օդանավերը այստեղ ավելի շատ են խորտակվում, քան որևէ այլ վայրում:

Երբ նավը կամ օդանավը իջնում է ջրի տակ, գրեթե միշտ մի որևէ կոտրված մաս դուրս է գալիս ջրի երես: Հսկայական լայները անհետանում է ջրապտույտի մեջ, և կարող է անցնել ամբողջ ամիս, մինչև որևէ տեղում կգտնվի, ասենք, տախտակամածի փայտյա նստարանը: Իսկ այդ խորհրդավոր շրջաններում նավերն ու սուզանավերը ուղղակի անհետանում են: Ոչ մի հետք նրանցից չի մնում: Շատ հանկարծակի խափանվում է ռադիոկապը և ռադիոլոկացիան:

Ես շատ կուզենայի հայտարարել, որ խորտակումների այդ անհամաչափությունը կապված է այդ շրջանների մոլեգին ջրերի, հակառակ հոսանքների քամիների, ջերմաստիճանի փոփոխականության և այլ երևույթների հետ:

Բայց, ցավոք, ես այդ իրավունքը չունեմ: Որովհետև այդ դեպքում ինչո՞վ բացատրել որևէ հետք չթողնող անհետացումների խորհրդավոր պատմությունը:

Քանի որ ոչ մի բացատրություն չկա, թե ինչ է տեղի ունենում այդ դեպքում, ուստի ասպարեզը մընում է նրանց, ովքեր պատրաստ են ենթադրություններ անել, հաշվի չառնելով արդեն հայտնի փաստերը: Ամենահամոզվածները, ինչպես ես ասացի,





## ԱՆՁՐԵՎԱՆՈՑ ԾԽԱՄՈՐՃԻ ՀԱՄԱՐ

Հորդ անձրևի տակ ծխամորճ ծխել սիրողներին (իսկ բոլորն էլ գիտեն, թե որքան դժվար է այդպիսի պահերին ծխախոտը պաշտպանել անձրևի կաթիլից) ծխամորճի նորարարության ֆաբրիկանտները ծխողներին առաջարկում են հասարակ, բայց շատ թանկ կառուցվածք: Դրա համար պետք է վճարել միայն 835 դոլլար և ոսկե անձրևանոցը կըպաշտպանի եթե ոչ ձեզ, ապա գոնե ձեր ծխամորճի ծխախոտը (ԱՄՆ):





## ԱԿՆՈՑՆԵՐ ԿՈՎԵՐԻ ՀԱՄԱՐ

*Երբ արոտավայրի միջով սկսեցին գազամուղ անցկացնել, ֆերմերները նկատեցին, որ կովերի տեսողությունը վատանում է: Հետազոտությունները պարզեցին, որ կովերի տեսողությունը փչանում է, որովհետև նրանք հաճախակի և երկար ժամանակ նայում են գազամուղի եռակցողների աշխատանքին: Ֆերմերները ստիպված էին կովերի համար ակնոցներ պատվիրել:*

*Մուգ պաշտպանական ակնոցներ արտադրող ֆիրման մեծ եկամուտ է ակնկալում, որովհետև գազամուղի շինարարությունը մի քանի տարի կտևի (Նոր Զելանդիա):*

## ԱՊԱԳԱՆ ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԺԱՄԱՑՈՒՅՑՆԵՐԻՆ Է

*Դեռ բոլորովին վերջերս ինքնիրեն լարվող ժամացույցները գրեթե դուրս մղեցին սովորական գրպանակավորներին: Իսկ այժմ նրանք են իրենց տեղը զիջում էլեկտրոնային ժամացույցներին: Շուկայում ընդամենը չորս տարի առաջ հայտնված այդ ժամացույցներն արդեն ճապոնական*




«թռչող ափսեների» ֆանատիկներն են, որոնք արդեն հասցրել են առաջ քաշել իրենց տեսությունը՝ այդ տեղերը ըստ նրանց, ձագարներ են, որտեղ Երկրի ձգողականությունը, մագնիսականությունը և այլ բնական հատկանիշները ավելի թույլ են և կամ ինչ-որ բանով տարբերվում են մեր մոլորակի մյուս շրջաններից:

«Բերմուդյան եռանկյունին» ժամանակին նախ մեծ հետաքրքրություն հարուցեց այնտեղ երևացող, չբացահայտված օբյեկտների վերաբերյալ բազմաթիվ տեղեկություններով, որոնք հաճախ հաղորդում էին քաղաքացիական կամ ռազմական օդաչուները: Բացի այդ, քիչ չեն այն մարդիկ, որոնք տարված են «թռչող ափսեների» գաղափարներով և ոչ մի կերպ չեն կարողանում հրաժարվել այն թաքուն մտքից, որ դրանք մեքենաներ են և պատրաստվել են տիեզերքի հեռավոր մի անկյունում ապրող խելացի արարածների կողմից, որոնք ժամանակ առ ժամանակ, չգիտես ինչու, թռչում են մեզ մոտ:Այդ կապակցությամբ հայտարարվել էր, որ «Բերմուդյան եռանկյունին» հատուկ վայր է, որը տիեզերքի եկվորները ընտրում են որպես իրենց հավաքատեղի:

Իրականում ի՞նչ գիտենք մենք տիեզերական ձգողականության, էլեկտրամագնիսային և այլ երևույթների մասին, որոնք առաջանում են հսկայական մրրկագոյացման, ջրապտույտի միջոցով, ինչպե՞ս անվանել այն: Ինչպիսի՞ն է ոչ միայն նրա ջրային զանգվածների, այլև նրանում ներգրավված ամբողջ տարրերի կազմությունը:

Հիշեցեք, օրինակ, ինչ վեճեր են տեղի ունենում «մոգական» գավազանով, ուռենու կամ կաղնու ճյուղով ստորերկրյա ջրերի և օգտակար հանածոների որոնումների շուրջը: Ի՞նչ իմանաս, գուցե, ինչ-որ տիեզերական ձգողականություն կամ այլ տարօրինակություններ իրենց անբացատրելի ազդեցությունն ունեն Երկրի մակերեսի և մթնոլորտի վրա:

Ընթերցողը կարող է ասել, որ հեղինակը ինչ-որ տեղ չափն անցկացնում է: Ես համաձայն եմ, բայց այդ դեպքում թող նա բացատրի և կամ ռեալ ենթադրություն անի այն մասին, թե ո՞ւր են անհետանում սուզանավերը, նավերն ու օդանավերը:

*Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԻ*

ժամացուցային արտադրության մեջ մի քանի տոկոս են կազմում։ Իսկ դա քիչ չէ։ Ճապոնիան տարեկան 59 միլիոն ժամացույց է թողարկում և Շվեյցարիայից ու ԱՄՆ-ից հետո աշխարհում երրորդ տեղն է գրավում։ Ինչո՞վ բացատրել էլեկտրոնային ժամացույցների արտադրության այդպիսի աճը։ Պարզվում է, որ ժամացույցների աշխատանքը կատարելագործելու համար երեք հնարավորություն կա. ճոճանակի ճշտության բարձրացում, ժամանակի ճիշտ ռադիոազդանշանի միջոցով ժամացույցների ավտոմատ ինքնաստուգում և ռադիոժամանակի սիստեմի ստեղծում, որի ժամանակ տվյալ քաղաքի բոլոր ժամացույցները ռադիոյի միջոցով կապված են վարպետ-ժամացույցների հետ և իրենց թվացույցի վրա ցույց կտան վարպետ-ժամացույցների չափած ժամանակը։ Նրանք ունեն իրենց ինքնավար մեխանիզմը՝ որձաքարային բյուրեղյա անսովոր ճոճանակով։ Բայց դրանք ապագա ժամացույցների ավետաբերներն են, որոնց մեջ ոչ մի շարժվող մաս չի լինելու (Ճապոնիա)։

## ԺՊԻՏ 200 ԴՈԼԼԱՐՈՎ

*Ինչպես հաստատում են ամերիկյան փտանականները, ծիծաղը կյանքում մեծ դեր է խաղում, երբ ծիծաղում են «բոլոր կանոններով»։*

*Նյու-Յորքում հատուկ ինստիտուտ է բացվել, որտեղ գեղեցիկ սեռի ներկայացուցիչներին 200 դոլլարով սովորեցնում են «հմայիչ ժպտալ»։*

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ





# ԱՆՏԱՌԻ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մրջյուններն անտառի բարեկամներն են: Եթե անտառում մրջյուններ շատ կան, նշանակում է այնտեղ խիստ կնվազեն վնասատու միջատները, տեղից-տեղ կտեղափոխվեն ու կտարածվեն բույսերի սերմերը, ժամանակին կհեռացվեն ու կվնասազերծվեն մանր աղտեղությունները: Այդ ժրաջան միջատները, արևածագից մինչև մայրամուտ անդադար աշխատելով, ավելի շատ գործ են կատարում, քան բույսերի պաշտպանության ժամանակակից տեխնիկայով զինված բազմաթիվ ջոկատներն ու ավիացիան, տոննաներով թունաքիմիկատներն ու գրբավչանյութերը: Վաղ առավոտվանից մինչև ուշ մթնշաղ մրջյունները ծառերի կեղևի տակից, տերևների, ծաղիկների, պտուղների վրայից, հողից, քարերի տակից կրում հեռացնում են միջատների թրթուրները, ձվերը, հարսնյակները և այլն: Դրանք միաժամանակ բնության սանիտարներն են, անխոնջ մշակները, որոնք հեռացնում են սատկած միջատների դիակները, վնասազերծում դրանք: Այս բոլորից բացի, մրջյունները օժանդակում են ծաղիկների փոշոտմանը, փխրեցնում հողը:

Մեր անտառներում շատ են տարածված անտառային շեկ մրջյունները: Եթե ուշադիր նայեք, անտառում, խոտածածկոցի մեջ կնկատեք գետնից փոքր-ինչ բարձրացած ձագարաձև մրջնանոցները, որոնց շուրջը վազվզում են հազարավոր միջատներ: Մեկը շինանյութ է կրում, որի չափերը հաճախ տասնյակ անգամ գերազանցում են իր մարմնի չափերին, մյուսները ծանրաբեռնված վերադառնում են որսից: Դրանք աշխատավոր, բանվոր մրջյուններն են, որոնք կառուցում և վերանորոգում են մրջնանոցը, ձմռան համար պաշար են կուտակում, խնամում են թրթուրներին և հարսնյակներին: Կան նաև զինվոր մրջյուններ, որոնք ունեն խոշոր գլուխներ և ահեղ ծնոտներ: Դրանք մրջնանոցը պահպանում են օտար մրջյուններից, խիստ ռազմատենչ են և միշտ մարտականորեն են տրամադրված: Նուրբ հոտառության շնորհիվ այս մրջյունները հեշտությամբ են տարբերում օտար մրջյուններին և վռնդում կամ սպանում են նրանց, հենց որ այդպիսի մրջյուններ են երևում իրենց մրջնանոցի շրջակայքում:

Ամռան սկզբում մրջնանոցից դուրս են գալիս բազմաթիվ թևավոր մրջյուններ: Դրանք արու և էգ մրջյուններն են, որոնք հենց նոր են դուրս եկել հարսնյակներից: Հարսանեկան թռիչքից հետո արուները սատկում են, իսկ էգերը իջնում են ցած: Բանվոր մրջյունները իսկույն որոնում գտնում են նրանց, կրծում են թևերը և տեղավորում հենց նոր պատրաստված փոքրիկ բներում, որտեղ դրանք ձու են դնում: Հետագայում այդ ձվերից դուրս են գալիս թրթուրները, որոնք աչքեր և վերջավորություններ չունեցող անօգնական էակներ են: Մրջյունները դրանց խնամում են մեծ զգուշությամբ, հաճախ տեղից-տեղ են տեղափոխում, ապահովելով խոնավությամբ, ջերմությամբ ու թարմ օդով, ինչպես նաև խնամքով կերակրում են: Շուտով թրթուրները հարսնյակավորվում են և անշարժանում: Երբ մրջնանոցին վտանգ է սպառնում, մրջյունները ա-



ռաջին հերթին փրկում են իրենց հարսնյակներին:

Մրջնանոցի ներսում իդեալական մաքրություն է տիրում: Ամեն ինչ իր տեղն ունի: Հատուկ սրահ է հատկացված ձվերի պահպանման համար: Այստեղ օդը չոր է, և, խոնավության ավելանալու դեպքում, ձվերը անհապաղ տեղափոխում են ավելի չոր սրահներ: Պահեստարաններում մթերքները դասավորված են կանոնավոր կերպով: Որոշ մրջնանոցներ նույնիսկ «անասնագոմեր» ունեն, որտեղ պահվում են մեղրատու «կովերը»՝ հատուկ լվիճներ, որոնք մրջյուններին քաղցր հյութ են մատակարարում: Հովիվ մրջյունները ժամանակ առ ժամանակ մեղրատու լվիճներին քշում են մրջնանոցից դուրս, խոտերի մեջ «արածեցնում», ապա կրկին ետ բերում մրջնանոց: Իսկ ընդհանրապես մրջյունների համար իրենք են կեր բերում դրսից:

Անտառի մրջյուններին չի կարելի անհանգստացնել: Մրջնաբները կարելի է ուսումնասիրել միայն արտաքինից, առանց ձեռք տալու կամ փորփրելու դրանք: Յուրաքանչյուր դպրոցական պետք է լավ պատկերացնի մրջյունների օգտակար դերը և ամեն կերպ նպաստի դրանց զարգացմանն ու տարածմանը:

# ՄՐՋՆԱՆՈՑՆԵՐ՝ ՔԱՐՏԵԶԻ ՎՐԱ

Այսպիսով, մենք իմացանք, որ եթե անտառում շատ են մրջնանոցները, անտառն առողջ է, կանաչ տերևների համար այլևս սարսափելի չեն անկշտում թրթուրները:

Հենց դրա համար էլ գիտնականներն ու անտառտնտեսության մասնագետները հաշվառման են ենթարկում անտառային մրջյունների բոլոր խոշոր գաղութները, կազմում են քարտեզներ, առանձնացնում մրջյունների այն տեսակները, որոնք օգտակար են մեր երկրի այս կամ այն շրջանի համար: Իսկ հարկ եղած դեպքում մրջնանոցները խնամքով տեղափոխում են այն վայրերը, որտեղ անտառի վիճակը վատ է, որտեղ պակասում են անտառային սանիտարները:

Այդ աշխատանքներին մասնակցում են նաև դպրոցականները:

Ահա թե ինչ է պատմում «Մըրջյուն» օպերացիայի մասնակիցներից մեկը՝ Ուֆայի № 9 դպրոցի պատանի միջատաբանների սեկցիայի անդամ Լիլյա Գադալշինան՝ Մոսկվայի «Պիոներ» ամսագրին ուղարկած իր նամակում:

## ՄԵՐ ԱՐՇԱՎՆԵՐԸ

Ամառային արձակուրդներին մեր երեխաները իրենց հանգիստն անց են կացնում Բաշկիրիայի այս կամ այն շրջանում: Կենսաբանության ուսուցիչը մեր սեկցիայի անդամներից յուրաքանչյուրին հանձնարարություն է տալիս մըրջյունների դիտարկման վերաբերյալ:

Տարբեր մրջյուններ տարբեր բնական պայմաններում են ապրում: Մեզ մոտ՝ Բաշկիրիայում կան և՛ անտառներ, և՛ մարգագետիններ, և՛ լեռներ, և՛ տափաստաններ: Արդեն չորս տարի է, ինչ մենք դիտարկում ենք մըրջյուններին, ուսումնասիրում, թե նրանց տարաբնակեցումը ինչպես է կախված բնական պայմաններից:

Արշավների ժամանակ ձգտում ենք ճշգրտորեն գրի առնել մեզ անհրաժեշտ տվյալները, այլապես անիմաստ կդառնար մեր աշխատանքը: Մեզ հետ վերցնում ենք սրվակներ՝ բամբակե խցաններով, և պինցետ: Հենց որ գտնում ենք բույնը, այնտեղից վերցնում ենք 10-20 մրջյուն, գցում սպիրտով լցուն սրվակի մեջ, իսկ ծոցատետրում նշում ենք սրվակի համարը և հավաքման տվյալները՝ ժամը, ամսաթիվը, ամիսը, տարվա եղանակը, մրջնանոցի տեղը: Կարևոր է նշել, թե ինչ բույսեր կային մրջնանոցի շուրջը՝ ծառե՞ր, թե՞ թփուտ, տեղանքը խոնա՞վ էր, թե՞ չոր, բնի մոտ կայի՞ն արահետներ և ո՞ւր էին տանում, քանի՞սն էին: Զննում ենք մրջնանոցը, նշում, թե ինչպես է լուսավորված, կա՞ արդյոք որևէ արտաքին շինվածք, դրա չափսերը: Աշխատում ենք պարզել, թե արդյոք մե՞ծ ընտանիք է ապրում այդ բնում, կա՞ն թևավոր մրջյուններ, մրջնանոցի բնակիչներն ագրեսի՞վ են, թե՞ ոչ:

Աշնանը ի մի ենք բերում մեր դիտարկման արդյունքները, ըստ որոշիչների պարզում, թե այդ մրջյուններից ո՛րը որ ընտանիքին, ենթաընտանիքին, ցեղին է պատկանում: Մենք ունենք մեր պայմանական նշանները, որոնց միջոցով նշում ենք մեր գտած մրջնանոցները քարտեզի վրա՝ ըստ դրանց բնորոշ հատկանիշների:

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՏԱՐԱԾՎԱԾ ՎԱՅՐԻ ՊՏՈՒՂՆԵՐԸ

## ՍԶՆԻ

Մեր հանրապետության անտառները հարուստ են նաև սզնիներով (պռնձ)։ Դրանց բարձրությունը հասնում է մինչև 3—8 մետրի։ Հայաստանում տարածված սզնիների 11 տեսակներից միայն մի քանիսն են օգտակար դեկորատիվ նպատակների համար, իսկ մնացած տեսակները կարելի է օգտագործել դաշտապաշտպան անտառների և կենդանի ցանկապատերի համար։

Այդ վայրի պտուղների ճյուղերը ծածկված են փշերով, ունեն ատամնաձև կտրտված տերևներ՝ կանաչի տարբեր երանգներով։ Պտուղները փոքր են, համեղ, լինում են սև, կարմիր, կարմրանարնջագույն։ Հիմնականում ուտվում են թարմ վիճակում, միայն լրիվ հասունանալուց հետո։





## ՋԿԵՌԵՆԻ

Սա նույնպես շատ արժեքավոր ծառ է, բարձրությունը՝ 3—6 մետրի է հասնում։ Սրա մշակովի տեսակների պտուղները աշնանը վաճառվում են Երևանի շուկաներում։ Սրա ճյուղերը նույնպես պատված են փշերով։ Տերևները ամբողջական, փայլուն են, ծաղիկները մեկական են և խոշոր, սպիտակ, իսկ պտուղները սզնու համեմատությամբ խոշոր են ու շատ ավելի համեղ, մանավանդ լրիվ հասունանալուց հետո։ Ջըկեռենու պտուղները հասունանում են շատ ուշ՝ մինչև առաջին ձյան գալը կամ քաղելուց հետո պահպանման ընթացքում։

## ԱՐՈՍԵՆԻ

Արոսենին (ծտիխնձոր) մինչև 1,5 մետր բարձրության փոքրիկ ծառ կամ թուփ է։ Տերևները խոշոր են, կտրտված կամ ամբողջական, ատամնաձև։ Ծաղիկները բացվում են խմբերով, հետևաբար՝ պտուղները նույնպես խմբված են ողկույզներում։ Պտուղները համեղ են, խնձորանման, կլորավուն, հաճախ՝ տանձաձև և հիմնականում կարմրավուն ու դեղնավուն գունավորում ունեն։

Արոսենին, ի տարբերություն սզնենու և զկեռենու, մեր հանրապետությունում ավելի քիչ է հանդիպում։ Հիմնականում տարածված է Սևանի ավազանում, Վայքում՝ Ջերմուկ, Զանգեզուրում՝ Քաջարան, Ապարանում՝ Արայի լեռ, Ախուրյանում, Լոռիում, Մեղրիում, Իջևանում, Երևանում և այլն։

*ԼԵՎՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*



### ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1. Աշխարհում քանի՞ ծով կա։
2. Ո՞րն է աշխարհի ամենածանծաղ ծովը։
3. Ո՞րն է աշխարհի ամենամեծ ծովը։
4. Ո՞րն է աշխարհի արհեստական ամենամեծ ծովը։
5. Ո՞րն է աշխարհի ամենախոր ծովը։
6. Ո՞րն է համարվում աշխարհի ամենատաք ծովը։
7. Որտե՞ղ է արձանագրված ջրի ամենաբարձր ջերմությունը։
8. Թվեցե՛ք չորս ծով, որոնք ունեն գույների անուններ։
9. Քարտեզի վրա գտեք ա՛յն ծովը, որտեղ մարդ չի սուզվում։ Ինչպե՞ս է կոչվում այդ ծովը և ինչու՞։

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*
*(Աշխարհագրագետ)*

*Նոր գիրք ձեզ համար*

Է. ՍԵԹՈՆ-ԹՈՄՓՍՈՆ

## ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ

# ԴՈՄԻ՛ՆՈ

Եթե ձեզ հարցնեն՝ ի՞նչ բան է դոմինոն, դուք անպայման կպատասխանեք՝ խաղ է, բոլորս էլ խաղում ենք: Ճիշտ է, խաղ է: Բայց ես ձեզ պատմելու եմ մեկ այլ դոմինոյի մասին, որը ոչ թե խաղ է, այլ՝ անուն է և պատկանում է Գոլդերյան լեռներում բնակվող աղվեսների ընտանիքի կրտսեր զավակին: Այս աղվեսիկը Դոմինո անունն ստացավ, որովհետև նրա քթի վրայով անցնող սև գիծը դեմքին դոմինոյի նմանություն էր տալիս:

Երբ ֆերմերի տղաները հայտնաբերեցին իրենց հավերը գողացող աղվեսի բույնը, մայր աղվեսն ստիպված եղավ տեղափոխել իր ընտանիքը ու նախ տարավ Դոմինոյին: Նա հասցրեց տեղափոխել նաև Դոմինոյի երկու քույրիկներին, բայց մյուսները մնացին բնում և հավանաբար ոչնչացան, որովհետև ֆերմերի տղաները այդ ընթացքում հասցրին պայթեցնել աղվեսների հին բույնը:

Նոր բույնը բավական խպահով տեղում էր, հնից մի երկու մղոն հեռու: Ծեր աղվեսները այն փորել էին խորամանկորեն: Մուտքը կորչում էր բարձր խոտերի մեջ: Սկզբում ծնողները սատկած որս էին բերում ձագուկների համար, իսկ երբ նրանք մի քիչ մեծացան, հայր աղվեսը կենդանի արջամըկներ ու գորտեր էր բերում և նետելով ձագուկների առաջ, ստիպում էր նրանց սեփական ուժերով որս հայթայթել, այդպիսով ինքնուրույնություն զարգացնելով նրանց մեջ: Իսկ երբ ձագուկներն արդեն ընտելացան որս անելուն, հայր աղվեսը որսը սկսեց թաքցնել բնից ոչ շատ հեռու: Փոքրիկ աղվեսիկները հոտառությամբ գըտնում էին հոր հետքերով ու փընտրում գտնում որսը: Ամենաճարպիկը, խելոքն ու հասկացողը, իհարկե, Դոմինոն էր: Կամաց-կամաց նրա մուշտակը սկսեց սևանալ և արծաթե փայլ ստանալ: Մի օր էլ, երբ աղվեսիկները վազվզում էին անտառում և փնտրում հոր թաքցըրած կերը, չգիտես թե որտեղից լույս ընկավ մի բծավոր գամփռ: Աղվեսիկները ցրվան փախան տարբեր կողմեր, բայց կրտսեր քույրիկը բաժին դարձավ ուժեղ գազանին: Դժբախտությունը մենակ չի գալիս: Այդ օրը տուն չըվերադարձավ նաև հայրը: Նա էլ էր բաժին դարձել շներին: Կաղամախիների հովտում մնացին մայրը և երկու ձագուկները: Մայր աղվեսը մենակ էր հոգում բոլոր կարիքները: Ասենք, ձագուկներն արդեն մեծ խնամքի կարիք էլ չէին զգում, ինքնուրույն էին դարձել: Մզագորշ որդին՝ Դոմինոն, արդեն բավական մեծ էր և նրա, մոր ու քրոջ հարաբերությունները արդեն փոխվում էին: Մայր ու աղջիկ մի օր էլ վերջնականապես հեռացան նրանից: Մի ինչ-որ նուրբ բնազդ քանդեց նրանց ընտանեկան կապը, և արագավազ Դոմինոն սկսեց ապրել մենակ: Նա դարձավ գեղեցիկ սև արծաթափայլ մորթով ուժեղ աղվես, որի մորթին շատ թանկ է գնահատվում: Գոլդերյան լեռներում շուտով բոլորն էլ սկսեցին խոսել նոր լույս ընկած սև աղվեսի մասին: Նա շատերի ախորժակն էր գրգռում, բայց գեղեցիկ, ուժեղ և խելոք Դոմինոն ապրելով ինքնուրույն և վտանգների ենթարկվելով, ավելի ու ավելի փորձառու դարձավ, ավելի ու ավելի խելոքացավ և ուժեղացավ:

Մենք պատմեցինք Սեթոն Թոմպսոնի պատմվածքներից մեկի հերոսի՝ Դոմինոյի մասին, ավելի ճիշտ, միայն նրա մանկության մասին: Երբ դուք կարդաք Թոմպսոնի «Պատմվածքներ կենդանիների մասին» գիրքը, կծանոթանաք Դոմինոյի ամբողջ կյանքին և շատ-շատ կսիրեք նրան: Բացի Դոմինոյից, գրքում պատմվածքներ կան նաև Շորորուն մուստանգի մասին, Կարմրավզիկ կաքավի մասին, եղջերուների և Վուլլի շան մասին: Սեթոն Թոմպսոնը շատ է սիրել կենդանիներին և մոտիկից մանրամասնորեն ու մեծ սիրով ուսումնասիրել է նրանց կյանքը: Ձեզ շատ դուր կգան նրա պատմըվածքները: Կարդացե՛ք այդ գիրքը:

*ԱՄԱԼՅԱ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

«ՊԻՈՆԵՐ» № 6

*ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ — Սոչի։ Չիտա։ Տարտու։ Տուլա։ Վոլոգդա։ Դանա։ Անապա։ Ալդան։ Դանիա։ Նիագարա։ Ազարակ։ Կոլա։ Լաոս։*

*ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԲԱՌԱՇՂԹԱ — Խարթում։ Մադրիդ։ Դամասկոս։ Ստոկհոլմ։ Մինսկ։ Կիև։ Վիլնյուս։ Սոֆիա։ Աթենք։ Քաբուլ։ Լյուքսեմբուրգ։ Գվատեմալա։ Անկարա։ Անդորրա։ Ասունսիոն։ Նիկոզիա։ Ալժիր։*

*ՌԵԲՈՒՍ — «Հերոսը մեկ անգամ է մեռնում, վախկոտը՝ հազար»։*

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ
## «ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ»

1. Մեր մոլորակի վրա եղած ծովերի թիվը հասնում է քառասունների:

2. Աշխարհի ամենածանծաղ ծովը Ազովի ծովն է, որի խորությունը 14 մետր է: Մի պահ համեմատենք այն Բանդա ծովի հետ: Վերջինս 531 անգամ ավելի խորն է:

3. Աշխարհի ամենամեծ ծովը Կորալյան ծովն է, որը Խաղաղ օվկիանոսի կիսափակ ծովերից մեկն է. ընկած է Ավստրալիայից հյուսիս-արևելք: Նրա տարածությունն է 4 միլիոն 791 հազար քառակուսի կիլոմետր: Կղզում գտնվող կորալյան ծագում ունեցող կղզիներից էլ ծովն ստացել է իր անունը:

4. Աշխարհի ամենամեծ արհեստական ծովը Կույբիշևյան ծովն է, ՍՍՀՄ-ում, որի մակերեսը հավասար է 6450 քառակուսի կիլոմետրի, այլ խոսքով՝ չորս անգամ ավելի մեծ է, քան Սևանա լիճը: Խորությունը 9 մետր է:

5. Աշխարհի ամենախոր ծովը Խաղաղ օվկիանոսի մասը կազմող և Ինդոնեզիայի սահմաններում գտնվող Բանդա ծովն է: Մակերեսը 695 հազար քառակուսի կիլոմետր է: Խորությունը հասնում է 7440 մետրի:

6. Աշխարհի ամենատաք ծովը համարվում է Կարմիր ծովը, որին մի կողմից շրջապատում են Աֆրիկայի, մյուս կողմից՝ Ասիայի անապատային շրջանները: Պատկերավոր ասած՝ երկու հսկա «վառարաններ» արևմուտքից և արևելքից անասելի կերպով տաքացնում են այս ծովը: Հիշենք Բաբ-էլ-Մանդեբ նեղուցի անունը, որը այդ ծովը կապում է Հնդկական օվկիանոսի հետ, այն արաբերեն է և նշանակում է «արցունքի դարպաս»: Անունը վկայում է այն մասին, թե իր ժամանակին նրանով Կարմիր ծով մտնելը և նավարկելը ինչպիսի դառնությունների հետ է կապված եղել:

7. Չնայած աշխարհի ամենատաք ծովը համարվում է Կարմիր ծովը, բայց ծովային ջրի ամենաբարձր ջերմությունը նկատվում է Պարսից ծոցում, որտեղ ջերմությունը հասնում է մինչև 37 աստիճանի:

8. Գույների անուններ են կրում Սև, Սպիտակ, Դեղին և Կարմիր ծովերը:

9. Մեռյալ ծովն է, որ գտնվում է Իսրայելի և Հորդանանի սահմանում: Ծով է կոչվում, բայց իրականում անհոսք և աղի լիճ է: Նա ծով անունն է կրում տրադիցիայով: Միշտ այնպես, ինչպես Կասպից, Արալի և Ամառ ծովերը: Ծովի երկարությունն է 76 կիլոմետր, լայնությունը՝ մինչև 15 կիլոմետր: Խորությունը հասնում է մինչև 356 մետրի: Նրա մակարդակը Միջերկրական ծովից ցածր է 395 մետրով: Մակերեսը հազար քառակուսի կիլոմետր է: Մեռյալ ծովի մեջ է թափվում Հորդանան գետը, որը քրիստոնեական աշխարհում հայտնի է դարձել շնորհիվ այն բանի, որ նրա մեջ, ըստ ավանդության, մկրտվել է Քրիստոսը: Մեռյալ ծովի ջրի աղիությունը ծովի ջրի աղիությունից բարձր է յոթ և կես անգամ: Այդ պատճառով էլ ծովում չկա օրգանական կյանք (բացի բակտերիաներից), որի համար էլ ստացել է «մեռյալ» (անկենդան) անվանումը:

Մեռյալ ծովի ամեն մի լիտր ջրում լուծված են մոտ 270 գրամ տարբեր հանքային աղեր՝ գլխավորապես կալիական աղ: Լուծված աղերը հագեցրել են ծովը, եթե նրա մեջ աղի կտոր գցենք, չի լուծվի: Նրա ջրի տեսակարար կշիռը ավելի մեծ է մարդու տեսակարար կշռից, հետևապես մարդն էլ այդ ծովում չի սուզվում: Տուրիստները սիրում են հովանոցները գլխավերևում պահած, մեջքի վրա պառկած այդ ծովում գիրք կարդալ կամ լուսանկարվել:




Լույս է տեսնում 1923 թվականից:

# ՊԻՈՆԵՐ

№ 7 հուլիս 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ-Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 04527: Պատվեր 972: Տպաքանակ՝ 78200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 25/VI 1974 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:




# ՊԻՈՆԵՐ

ՀՈՒԼԻՍԻ
28-Ը
ՍՍՀՄ ՌԱԶՄԱ-
ԾՈՎԱՅԻՆ
ՆԱՎԱՏՈՐՄԻ
ՕՐՆ Է

ԳԻՆԸ՝ 10 Կ. ԻՆԴԵՔՍ՝ 77806

Այս և ուրիշ շատ գեղեցիկ նավամոդելներ են պատրաստել Երևանի Օրջոնիկիձեի շրջանի ԴՕՍԱԱՖ-ի նավամոդելիստները: Խմբակի անդամները ուշի-ուշով լսում ու կատարում են իրենց ղեկավարի՝ Նորիկ Գալստյանի դիտողությունները: Նրանք իրենց մոդելները փորձարկում են մոտակա Կոմերիտմիության անվան զբոսայգու լճում:







